# ԻՆՉ ՊԵՏՔ Է ԿԱՐԴԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

**Ն. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ — «ՊԱՏՐԱՍՏ», 1927 թ. Պետհրատ**

Այս փոքրիկ գրքույկի մեջ ընկ. Ն. Կրուպսկայան բացատրում է պիոներներին, թե ինչու համար պիոներներին միշտ ուղղում ենք «պատրաստ» կոչը, որին պիոներները պատասխանում են—«միշտ պատրաստ»:

Այդ կոչն ընկ. Լենինը սրանից դեռ 25 տարի առաջ (այսինքն այն ժամանակ, երբ դեռ ևս մեր պիոներները և նույնիսկ կոմյերիտականներից շատերը ծնված չեն եղել) ուղղել է բանվոր դասակարգի գործի համար պայքարողներին, կուսակցության անդամներին, որպեսզի նրանք միշտ պատրաստ լինեին հարմար դեպքում դուրս գալ ցարի կառավարության դեմ և տապալել այդ կառավարությունը: Այդպես էլ եղավ: Նրանք պատրաստ մնացին ու տապալեցին բանակալ ցարին ու նրա կառավարությունը:

Այժմ, խորհրդային իշխանության ժամանակ, այդ կոչը միշտ ուղղվում է պատանի պիոներներին, որպեսզի նրանք նույնպես պատրաստ լինեն ընկ. Լենինի պատգամները կատարելու, սովորեն, դաստիարակվեն լենինյան ոգով ու ապագայում դառնան մեր Խորհրդային Միության ամուր հենարանները:

Բոլոր պիոներները, որոնք վարժ կարդալ գիտեն, պիտի կարդան այս գրքույկը. իսկ քիչ կարդալ իմացողների ու փոքրիկների համար պետք է կարդան ու բացատրեն լավ կարդացող պիոներները: Ամեն մի պիոներ պետք է ունենա այս գրքից, ունենալը դժվար չէ, որովհետև գրքույկն արժե 4 կոպեկ:

**Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ — «ՇՈՒՆՆ ՈՒ ԿԱՏՈՒՆ», —1927 թ. Պետհրատ**

Ինչպես Հովհաննես Թումանյանի բոլոր մանկական գրքերը, նույնպես և «Շունն ու կատուն» բոլոր մանուկները սիրում են ու կարդում հաճույքով և հետաքրքրությամբ. այդ է պատճառը, որ մեր Պետհրատը, մանկական մի շարք նոր գրքերի հետ միասին, հրատարակել է նաև «Շունն ու կատուն»— պատկերազարդ ու շքեղ հրատարակությամբ:

Շատ անգամ, երբ մեր պիոներներն ուզում են փոքրիկ հոկտեմբերիկների համար որևէ հետաքրքիր գիրք կարդալ, դժվարանում են այնպիսի մի գիրք ընտրել, որը և՛ հասկանալի լինի հոկտեմբերիկներին և՛ հետաքրքրական: «Շունն ու կատուն» այն գրքերից է, որ մեր պիոներները կարող են կարդալ հոկտեմբերիկների համար և՝ բացի այդ՝ բացատրել նաև նրա մեջ եղած նկարները:

Այն հոկտեմբերիկները, որոնք մի կամ երկու տարի արդեն սովորել են դպրոցում, նրանց համար դժվար չէ այս գրքի ընթերցումը, քանի որ գիրքը տպված է խոշոր տառերով և մաքուր հրատարակություն է, մի բան, որ շատ է օգնում առհասարակ անվարժ կարդացողներին:

«Շունն ու կատուն»-ի ամբողջ բովանդակությունը նկարված է գրքում. այս հանգամանքը նույնպես կօգնի հոկտեմբերիկներին՝ իրենց կարդացածն ավելի լավ հասկանալու համար:

**ԽՆԿՈ ԱՊԵՐ — «ՄԵԾՆ ՀՈԿՏԵՄԲԵՐ», Երևան 1927 թ., Պետհրատ, էջ 16, գինը 50 կ.**

Խնկո Ապերը մանուկների ամենասիրելի բարեկամներից է. նա այն գրողներից է, որոնք ընթերցանության նյութ են տալիս մեր մանուկ ու պատանի ընթերցողներին: Ամեն մի պիոներ, աշակերտ կարդում, սովորում է դասագրքերում նրա գրվածքները: Խնկո Ապերն ինքն էլ շատ է սիրում մանուկներին, պատանիներին և, ամենից շատ, ինչպես ինքն է ասում, «վարդի կոկոն փոքրիկ պատկոմ»-ներին (պիոներներին), այդ պատճառով էլ նա իր լավ գրվածքներից մեկը՝ «Մեծն Հոկտեմբեր»-ը նվիրել է նրանց:

Իր այս պատկերազարդ գրքի մեջ Խնկո Ապերը գեղեցիկ ու հասկանալի լեզվով պատմում է Մեծ Հոկտեմբերի մասին, այն պայքարի ու հաղթանակի մասին, որ բանվոր դասակարգը՝ գյուղացիության օգնությամբ՝ տարել է՝ տապալելով բանակալ հրեշին — ցարին ու նրա կառավարությունը և հաստատել է խորհրդային իշխանություն:

Մեր պիոներների ու հոկտեմբերիկների ընթերցանության համար՝ իր տեսակի մեջ լավագույն գրքերից մեկն Խնկո Ապոր «Մեծն հոկտեմբեր»-ը:

Այս գիրքը ոչ միայն պիտի կարդան մեր պիոներները, այլև արժե, որ ամեն մի պիոներ ունենա դրանից և կարդա դեռևս վարժ կարդալ չիմացող հոկտեմբերիկների համար:

Խնկո Ապոր այդ անկեղծ ու գեղեցիկ նվերը՝ պիոներ ընթերցողներին մեծ հաճույք կպատճառի և կներշնչի նրանց, որ իրենց հայրերի ու եղբայրների արյուն քրտինքով ձեռք բերված խորհրդային կարգերը պահպանելու համար լինեն միշտ պատրաստ ու ապագայում մեր խորհրդային երկրի կառուցումը շարունակողները հանդիսանան:

Գ. Ս-յան

## „ՊԻՈՆԵՐ"-Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ՀՈՒԼԻՍ—ԴԵԿՏԵՄԲԵՐ 1 ՌՈՒԲԼԻ 20 ԿՈՊ., 3 ԱՄԻՍԸ՝ 75 ԿՈՊ., ՄԵԿ ԱՄԻՍԸ՝ 25 ԿՈՊ.**

*6 ամսով բաժանորդագրվողները կստանան որպես պրեմիա 2 գիրք, իսկ երեք ամսով՝ 1 գիրք:*

ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրա՛ստ ես:

# ՊԻՈՆԵՐ

№ 4 — ՀՈՒԼԻՍ — 1927 Թ.



ԽՆԿՈ ԱՊԵՐ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՔԱՅԼԵՐԳ

Մեկ,
Յերկու,
Ամառվա շոգին
Քաղաքից գանք դուրս,
Քայլենք
Անվրդով,
Հաղթական
Յերթով,
Մի՛շտ
Կազմ ու պատրաստ,
Մի՛շտ
Ժիր ու զգաստ։
Գնանք մարզանքի,
Մտնենք մեծ ճամբար,
Առնենք հրացան՝
Վարժվելու համար։
Մեր կամքը՝
ՀԱՍՏԱՏ,
Մեր ձեռքը՝
ՈՒԺԵՂ.
Մեր հրացանի
Նշանը՝
ԱՆՇԵՂ։
Սովորենք
Հիմա

Յեվ ՔԻՄՅԱ,
ՔԻՄՅԱ.
ԳԱԶ
ՈՒ ՀԱԿԱԳԱԶ
Անենք
ԱՆՊԱԿԱՍ.
Պայթի փոթորիկ,
Ծագի պատերազմ՝
Թշնամու առաջ
Դուրս բերենք լավ կազմ։

Կարմիր բանակում
Աշխույժ ու կայտառ
Մեծ մեծ խմբերով
Լինենք ՍԱՆԻՏԱՐ։

Վիրավորվածին
Չթողնենք ընկած.
Դաշտից, անտառից
Յետ բերենք գրկած.

Գիշեր ու ցերեկ
Լինենք ԽՈՒԶԱՐԿՈՒ,
Գտնենք թշնամուն
Չար ու բանսարկու։

Թե գտնենք նրան
Քարի, թփի տակ,
Արճիճ գնդակի
Բերանը կտանք։

Գիշեր ու ցերեկ
Թող սողանք. գողանք.
Միայն բանակին
Օգնության մենք գանք։

Սրտով միանանք
Համայն աշխարհի
ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ՝
ՄԻ ԳԱՂԱՓԱՐԻ.

Առնենք հրացան
Ու գնանք Լագեր,
Վարժվելու համար,
Պատանի ընկեր։

Մեկ,
Յերկու,
Քրտինքը
Կաթ-կաթ,
Քաղաքից
Գանք դուրս,
Պիոներ,
Ջոկատ...



ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՅՔԱՐԻՆ՝ ՅԵՂԵ՛Ք ՊԱՏՐԱՍՏ

# ՀՐԱՀԱՆԳ ԽՍՀՄ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

Աշխատավորների յերկրին, մեր Խորհրդային Միությանը կապիտալիստները սպառնում են արյունոտ պատերազմով։

Նրանք ուզում են խլել խորհրդային յերկրի բանվորներից ու գյուղացիներից Հոկտեմբերի նվաճումները, այն նվաճումները, վորի համար պայքարում և ընկնում էին ձեր հայրերը, ձեր մեծ յեղբայրները։

Նրանք ուզում են գործարանատերերին վերադարձնել գործարանները, կալվածատերերին՝ հողը։

Նրանք ուզում են ձեզնից, մանուկներ, խլել աշխատանքային դպրոցը, լագերները, մանկական սանատորիաները, հրապարակներն ու ակումբները։

Նրանք ուզում են վերականգնել հին, ցարական կարգերը, վորի ժամանակ, վոստիկանների գոռոցների տակ, բանվորներն ու գյուղացիները, արյունոտ քրտինքով, ստեղծում էին հարստություններ՝ ձրիակերների համար։

Նրանք ուզում են վերականգնել այն կարգերը, վորի ժամանակ յերեխայից դաստիարակում էին հնազանդ ու խոնարհ ստրուկի։

Կապիտալիստները ցանկանում են աշխատավորների արյունով լցնել խորհրդային քաղաքների փողոցները, խորհրդային գյուղերի դաշտերը։

Կապիտալիստները, Անգլիայի կառավարության գլխավորությամբ, ցանկանում են պատերազմի մեջ քաշել Խորհուրդների աշխարհը։

Մենք պատերազմ չենք ուզում։ Բանվորների և գյուղացիների արյունը թանկ է մեզ համար։

Բայց մենք պատրաստ պիտի լինենք պատերազմի, մենք պատրաստ պիտի լինենք ամեն ժամանակ յետ մղելու թշնամու հարձակումը։ Մենք պատրաստ պիտի լինենք պաշտպանել Խորհուրդների յերկիրը։

Պիոները դեռ փոքր է։ Նա չի կարող հրացանը ձեռքին պաշտպանել Խորհրդային Միության սահմանները։ Նա չի կարող մտնել Կարմիր Բանակի շարքերը և իր հայրերի ու մեծ յեղբայրների հետ՝ յետ մղել թշնամու հարձակումը։

Բայց պիոները կարող է ոգնել յերկրին՝ պաշտպանվելու համար։ Ինչքան ամուր լինի մեր յերկիրը, վորքան լավ ամրապնդենք արդյունաբերությունն ու գյուղական տնտեսությունը, վորքան գրագետ լինենք մենք — այնքան հեշտ կը լինի մեզ համար պատասխանել կապիտալիստների փորձերին, պաշտպանել բանվորների և գյուղացիների իշխանությունը։

Պատանի Պիոներների Կենտրոնական Բյուրոն ԽՍՀՄ բոլոր պիոներներին տալիս է հրահանգ.

— Խորհրդային յերկրի համար այս ծանր ժամանակներին, զինվորական վտանգի այս մոմենտին — ՊԻՈՆԵՐՆԵՐ, ՅԵՂԵՔ ՊԱՏՐԱՍՏ։

Յուրաքանչյուր պիոներ պետք է լինի պատրաստ՝ կատարելու հետևյալը.

1. Լինել դիսցիպլինար, ճշտապահ և կատարող. կատարել այն բոլոր առաջադրությունները, վոր տրվում են քեզ։

2. Լինել առաջինը՝ աշխատանքային գործունեյության մեջ — քաղաքում, գյուղում՝ գյուղատնտեսության բարձրացման մեջ, հայտնաբերել նախաձեռնություն ամեն մի հասարակական գործում։

3. Ուշադրությամբ կարդալ պիոներական թերթերն ու հանդեսները, աչալուրջ կերպով հետևել մեր թշնամիների բոլոր գործողություններին, մեր թշնամիների փորձերին, վորոնք նպատակ ունեն Խորհրդային Միությանը պատերազմի մեջ գցել։

Կոփել որգանիզմը, միշտ առողջ լինել։

5. Կարողանալ առաջին ոգնությունը ցույց տալ դժբախտ դեպքերում։

6. Իմանալ շարք կանգնելը, տեղագրությունը և նշանախոսությունը։

7. Մասնակցել հրաձգային խմբակներին, իմանալ քիմիական պաշտպանության կանոնները, տարածել պլաներային գործը, զարկ տալ ռադիոսիրողների գործունեությանը։

8. Ուշադրություն դարձնել, սիրել և հոգ տանել Կարմիր Բանակին։

9. Ամեն կապ պահպանել ամբողջ աշխարհի պատանի պիոներների հետ։

**ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՅՔԱՐԻՆ՝ ՅԵՂԻՐ ՊԱՏՐԱՍՏ։**

ՀամԼԿՅԵՄ ԿԵՆՏ. կից Պ. Պիոն. Կ. Բյուրո

ՍԻՄԱԿ

# ԻՆՉ ԼԱ՛Վ ԷՐ

Հուլիսն էր. առավոտյան մեղմ ու գարնկան քամին սլվլացնելով անցնում էր հասկահանած աշնանացաններով յով թավիշ կանաչ գորգամաների վրայով։ Արևը դեռ դուրս չեր եկել, բայց երկնքի վրա ցիրուցան փոքրիկ ամպիկները հագար ու մի գույն էին առացել—տեղ-տեղ կաս կարմիր կարմրել։ Արտասուխ յերգն ու ճնճղուկների ծլվլոցը լցրել էին բացցրատույր օդը։



Գյուղի պիոներներն սպասում եյին

Գ. գյուղի պիոներները գյուղից դուրս, առվի ափին, մի կանաչ խոտհարքում, սպասում եյին քաղաքից յեկող պիոներներին։ Երեքյուրոյից նրանց իմաց եյին տվել, որ առավոտը վաղ, նրանց գյուղի դիմացի անտառը՝ ճամբար (լագեր) գնալու համար քաղաքից մի կոլեկտիվ պետք է գա, ու իրենք պետք է դիմավորեն նրանց, հյուրասիրեն ու ամեն աջակցություն ցույց տան։

—Ասում են մի ամիս պիտի մնան լագերում. ի՞նչ լավ կլինի է՛, շատ բան կսովորենք նրանցից,—ասում եր կարմրաթուշ Վարդուշն իր ընկերներին։

—Տեսնես աղջիկներ էլ կլինե՞ն, թե մենակ տղերք են—հարցրեց բարակլիկ Հռիփսիկը։

—Աղջկերք, չե չե մի պոզեր. աղջիկն ի՞նչ է, որ լագերում դիմանա,—կատակեց հաստերես Սոսին։

—Են էլ քաղաքի աղջիկը,—շարունակեց պզտիկ Վանին։

Ցեվ սկավեց սովորական ծաղր ու կատակ տղաների ու աղջիկների միջեվ։

—Ե՛յ մեծափափախ, դու ըսկի գիտե՞ս, որ քաղաքում պիոներ աղջիկները մեր պիոներ աղջիկների նման չե՛ն. նրանք էնպես լավ մարզա՛ծ գիտեն, էնպես պինդ ու սրատ են, վոնց վոր տղերքը.—խոսեց քաղաքում յեղած բոլ մեծահասակ «սխպտակ» Գեվորգը (ընկերները նրան «սխպտակ» եյին ասում)։—Դե համեղ, գեղումը, մայրերը յեսամնաց են, անհասկացող, վախկոտ, աղջիկներին երակուրախայի էլ չեն թողնում—կարգին մարզանքն էլ են խանգարում, հա՛ քաղաքումն էլ էդպես չի—դրա համար էլ մեր աղջիկները վախկոտ են ու թույլ։

Կովկարի առաջը ճեղինակություն եր—բոլորը լռեցին։

—Իճարկե, իճարկե, վոր թողնեն, մենք ձեզանից լավ պիոներ կլինենք,—ասաց չարաճճի փոքրիկ Վարդիկը։

—Մանավանդ դո՛ւ, ա՛յ ճուտիկ,—ծիծաղեց մեծափափախ Կոստին։

—Հա՛, հենց յես, ա՛յ, հենց, յե՛ս,—ճչաց Վարդիկը։

—Այ, եկան, եկան,—ասաց շլդիկ Թամարը, վոր նշանակված եր ճանապարհին նայելու։

Գեվորգը սուլեց ու «զգա՛ստ» ճչաց։ Բոլոր յերեխաները սթափվեցին ու կարգ մտան։

—Ե՞, սխալվեց, շլդիկը սխալվեց, են հո սելվորներ են,—նորից աղաղակեց Վարդիկը։

Իսկապես վոր միայն սայլեր եյին յերևում։

—Չե՛, է՛, չե՛, սայլերի յետևից են գալիս—իմ ծուռ աչքը ձեր աչքերից լավ է տեսնում,—կատակեց սրամիտ ու խելոք Թամարը։

—Ճիշտ է, ճիշտ է. ա՛յ, ա՛յ, յերևում են,—առաջին շարքից դուրս յեկած տղաները, վորոնք հեռվից եյին գիտում.—կարմիր փողկապներն յերևում են։

—Զգա՛ստ,—նորից հնչեց Գեվորգի զիլ ու գոռեկան ձայնը։

Մի քանի րոպեյից հետո, կոլեկտիվը, բոլոր ամենայնի, պատրաստ եր։ Թմբկահար շլդիկ Թամարն իր փոքրիկ թմբուկով արդեն քայլերգ եր նվագում. նրա հեռվից Կոստին հպարտությամբ տանում եր փոքրիկ բայց սիրուն դրոշակը։ Ապա՝ կոլեկտիվը կարգին քայլվածքով ճանապարհ դուրս ռեկավ յեվ քայլում եյին ուղիղ։

Քաղաքից յեկող կոլեկտիվն էլ, լսելով Թամարի թմբուկի ձայնը, սթափվեց, հավաքվել քանի երութ յուր յեվ կոլվար Սուրիկն իր բամբ ձայնով «ըզգա՛ստ» աղաղակեց։

—Անցեք սայլերի առջեվը,—կարգադրեց նա։

Յերեք րոպեյից հետո, Գեվորգի Կոլեկտիվը կանգնած եր ճանապարհի աջ կողմը, իսկը՝ ծայրին, իսկ Սուրիկի կոլեկտիվը, թմբուկ զարկելով, կանոնավոր քայլով առաջ եր գնում։

Յերբ Սուրիկն արդեն հասնում եր, Գեվորգն աղաղակեց.

—Պատվի՛ ա՛ռ։

Ու յերկու կոլեկտիվներն էլ աջ ձեռքերը գլուխներից վեր բարձրացրին—իսկ յերբ կոլեկտիվները հավասարվեցին, նա նորից աղաղակեց.

—Պիոներներ, պատրա՛ստ։

Ու յերկու կոլեկտիվների մառաղ կրծքերից թնդաց.

—Մի՛շտ պատրա՛ստ։

Բազմախորհուրդ եիչ, վորը գնաց արձագանք տալու շրջապատի հսկա լեռների խորխոտ լանջերին։

Ապա կոլեկտիվները կանգ առան, Գեվորգն իրենց ուրախությունը հայտնեց նրանց տեսնելով ու բարի գալուստ ասաց։ Սուրիկը շնորհակալություն հայտնեց ու քաղաքից բերած վողջույնը տվեց։

Այնուհետեվ, մի հինգ րոպե, մինչեվ գյուղին



*Առվից վոչ հեռու գտնվում է լագերը*

հանդերը, ջերմանները գնում եյին ազատ—առանց շարքի ծանոթանում եյին, բարձրաձայն խոսում, ծիծաղում, խնդում, ինչպես շրջակա հրաշագեղ բնությունը։

Գեվորգը հայտնեց, վոր իրենց կոլեկտիվն ակումբում, վորը գյուղի դպրոցի դասարաններից մեկն է, նախաճաշ է պատրաստել նրանց համար, վոր իրենք էլ պետք է գան հետները՝ լագերը շինելուն օգնելու, վոր մտածում են նրանցից շատ բան սովորել յեվ այլն։

Գյուղին հասնելով՝ նրանք նորից շարք կանգնեցին—այս անգամ խառը. սկզբից գնում եյին 2 թմբկահարները, ապա՝ յերկու դրոշակները ու ապա՝ խառը յերկու կոլեկտիվները, վորոնց ղեկավարում եր Գեվորգը, իսկ Սուրիկը գնում եր յետեվից։

Ամբողջ գյուղը—կին, տղամարդ, ծեր թե մանուկ, դուրս եյին յեկել իրենց բան ու գործը թողել, շատերը դաշտ գնալու ճանապարհից յետ դարձել ու լցվել դպրոցի բակը։ Ամենքն ուզում եյին տեսնել, խոսել, զրուցել քաղաքից յեկած պիոներների հետ։

Նախաճաշից հետո, մի սայլի բարձած իրենց վրաններն ու պաշարը, յերկու կոլեկտիվները, նույն կարգով, ուղեվորվեցին անտառ։

Անտառում, 2 վերստ գյուղից հեռու, Գեվորգի խորհրդով, մի սառն աղբյուրի մոտ, առվից վոչ հեռու, մի բացատում, ընտրեցին լագերի տեղը։

Խանդավառ վոգեվորությունն ու կոլեկտիվ գործելու ձգտումն անսահման եր։ Յերգ, ծիծաղ, անմեղ կատակ, ժիր կանչվռտոց, իրար օգնելու խրախուսական ճիչ ու աղաղակ, լցրել եյին անտառը։

Մի ժամից հետո լագերը, իր բոլոր որենքների համաձայն, պատրաստ եր։

Գյուղի կոլեկտիվն ամբողջ օրը մնաց լագերում։ Բոլոր լավ աղբյուրները, ընկույզ ու բուրումնավետ ծաղիկները, լողանալու համար տեղերն առվում արդեն հայտնի եյին քաղաքացի պիոներներին։ Սար բարձրանալու ճանապարհները—անտառի մութ ծմակներով, յեղանակի փոփոխության նշանները յեվ այլն շատ բաներ սովորեցրին քաղաքացիներին։

Սուրիկն ու իր ընկերներն էլ իմացան, թե գյուղն ինչ դրության մեջ է, ինչքան չքավորներ կան, ինչ հասարակական աշխատանքներ կարող են կատարել իրենք յեվ ինչ ձեվով, վորտեղ է շրջանային կենտրոնը ինչպես պետք է գնալ այնտեղ յեվ այլն։

Յերեկոյան դեմ ընդհանուր ժողով արեցին յեվ վորոշեցին—ընդհանուր ուժերով գյուղի կալերում ցերեկույթ կազմակերպել։ Այդ նպատակի համար հաջորդ օրը Սուրիկն ու Գեվորգը պիտի գնային շրջկենտրոն—այնտեղի պիոներական յերաժշտախումբը խնդրելու յեվ կոլեկտիվներից մեկին հրավիրելու։

Հաջորդ օրը շրջկենտրոնում, հրահանգչի հետ խորհրդակցելով, վորոշեցին կիրակի օրը գյուղում «մեծ գործ անել»,—ինչպես սիրում են ասել պիոներները։ Այն է, շրջկենտրոնից կգան յերաժշտախումբը, շրջհրահանգիչը, մի պիոներական կոլեկտիվ յեվ կոմյերիտականների մի խումբ, կաշխատեն հավաքել նայեվ շրջակա գյուղացիներին։ Նախ կլինի միտինգ, ապա՝ գրական—յերաժշտական ցերեկույթ յեվ վերջը՝ 3 կոլեկտիվների մասնակցությամբ՝ մարզահանդես։

Լուրը տարածվեց ամբողջ շրջանում, մոտիկ բոլոր գյուղերի պիոներներն ու կոմյերիտականները անհամբեր սպասում եյին կիրակի օրվան, մանավանդ՝ Գ. գյուղացիները։

Կիրակի օրը, իրոք վոր, մեծ գործ դուրս յեկավ։

Յերաժշտախմբին ու շրջկենտրոնից յեկող կոլեկտիվին դիմավորելու եյին դուրս յեկել լագերի յեվ Գ-ի կոլեկտիվները։ Նրանց հանդիպումը, դիմավորումն ու ճառերը շատ հուզեցին շրջապատող գյուղացիներին։

Իսկ յերբ՝ միտինգի ժամանակ՝ լագեր յեկած կոլեկտիվի ղեկավարն իր վոգեվորված ճառը վերջացրեց այսպես, թե «մեր դաշինքը ձեզ հետ, գյուղացի ընկերներ, ամուր ու անխորտակելի կլինի, ու դրանով մենք կհաղթենք մեր ամեն տեսակի թշնամիներին»,—ծերունի Նեսո քեռին—արցունքն աչքերին իր անատամ բերանով աղաղակեց.

—Ջա՛ն, բալեք, ջան, ջա՛ն. են, վոր յես ձեզ ու ձեր արածներն եմ տեսնում ես հասկնում, դուք ճիշտ վոր ամենքին կհաղթեք։

Ամենից վերջը ձայն ուզեց Ակոբ ապին, մի հսկայամարմին, ալեխառն ու բացճակատ գյուղացի։ Յերբ նա ամբիոնի տեղ ծառայող մեծ քարի վրա բարձրացավ ու իր փափախը վերցրեց գլխից—բոլորն էլ լռեցին. չռած աչքերով նրան եյին նայում ու սպասում, թե ինչ պիտի ասի այս սակավախոս բայց արդարամիտ աժդահան։

—Ձեր կանաչ արեվին մատաղ, կարմիր բալաներ, ձեր մեծ եսակ շատ լավ բաներ ասաց, վոր դուք պետք ա սովորեք ու անեք։ Դուք, վոր դեռ էդքան փոքր՝ էդպես շատ բան գիտեք ու էդքան սիրում եք իրար, յես հասկանում եմ, վոր դուք ամեն բան կանեք, դուք սարեր շուռ կտաք։ Դե՛, բալիկս, մենք չենք տեսնի էդ լավ օրերը. միայն կտակ եմ անում ձեզ — վոր յերբ մեծանաք, ինձ նման սպիտակեք ու էդ մեծ գործերն անելով՝ մեր յերկիրը դրախտ շինեք, յեկեք մի օր գերեզմանիս վրա կանգնեցեք ու ասացեք՝ —Ակոբ ապի՛, թող վոսկորներդ հանգստանան, մենք մեր խոստացածը կատարել ենք»։

Ասաց, բիչ կանգնեց ու հետո մարմնով թեքավ բարեց։ Մի քանի րոպե լուռ եյին, ապա՝ ծափերն ու վորոտընդոստ ուռաները թնդացրին ողջ յեվ յերաժշտախումբն «Ինտերնացիոնալ» նվագեց։

Ակոբ ապոր ճառն այնպիսի վոգեվորություն ու խանդավառություն մտցրեց պիոներների մեջ — վոր չեյին կարողանում կարգ պահպանել՝ ցերեկույթն սկսելու համար։

Ցերեկույթն ու մարգահանդեսն եվ անցան շատ հաջող յեվ խիստ մեծ տպավորություն թողեցին գյուղացիների վրա։

Գյուղխորհուրդը լավ հյուրասիրեց բոլոր հյուրերին, ու յերեկոյան դեմ շրջկենտրոնից յեկած ընկերները գնացին ուրախ ու գոհ — հրավիրելով հաջորդ կիրակի այս յերկու կոլեկտիվներին իրենց մոտ։ Սրանից հետո, լագեր յեկածների ու գյուղկոլեկտիվի պիոներներն ավելի մտերմացան, ավելի մոտեցան։ Հաջորդ շաբաթ յերեկոյան, յերկու կոլեկտիվի ողակավարները խորհրդի հավաքվեցին, թե ինչ հասարակական աշխատանք պիտի կատարեն գյուղի համար։ Հաշվի առեցին, թե գյուղում քանի կարմիր բանակային կա, վորոնց ընտանիքն աշխատող ձեռք չունի, քանի ուրիշ ընտանիքներ կան, վորոնք կարոտ են ոգնության — իրենց դաշտային աշխատանքները կատարելու համար։

Վորոշվեց կոլեկտիվի ամեն մի ողակին գյուղացի մի մեծահասակ պիոներ կցել (գյուղացի պիոներները, իրենց ընտանիքի տնտեսությամբ զբաղված լինելով, բոլորն ազատ չեն)՝ այդ ընտանիքներին ոգնություն ցույց տալու համար։

Խոտհարքի ամենայեռուն ժամանակն եր. քաղաքացի պիոներները կարող եյին խոտ հավաքել, սայլ բարձելուն ոգնել, բայց խոտ հարել չեյին կարող — ապա ի՞նչ անեյին։ Գեվորգն առաջարկեց դիմել կոմյերիտ բջիջին, վոր նրանք մի քանի յերիտասարդ տան, մեծահասակ պիոներների մեջ եվ կան մի քանի հոգի, վորոնք գերանդի բանեցնել գիտեն, ու այսպիսով կկարողանան գործն առաջ տանել։

Ասածն արած եր, Գեվորգն ու Սուրիկը, վորոնք նույնպես կոմյերիտական եյին, դիմեցին բջիջին։ Ճիշտ ե, ամեն կոմյերիտական իրենց տնտեսության համար մեծ ուժ եր, բայց, քաղաքից յեկած ընկերների սիրուն, վորոշեցին հերթով 4 կոմյերիտական ոգնել պիոներների մեծ գործին։

Յերկու որ հետո Վաթնանց Միկիչի (վորի տղան կարմիր բանակային եր, ինքն եվ սայլից ընկել՝ կողերը փշրել եր ու պառկած եր անկողնում) մեծ խոտհարքը մոտ 8 գերանդիավոր յեվ մինչեվ կեսօրը բոլորը հնձեցին։ Խաթուն հոքիրը (Միկիչի կինը), յերբ իմացավ այս բանը — ուրախությունից չգիտեր ինչ անել յեվ պատրաստ եր ընկել՝ լավ կերակուր պատրաստելու էդ «կարմիր բալաների» համար. սակայն խելոք ու հեռատես Գեվորգը, վորը լավ գիտեր գյուղական սովորությունները, իսկույն մի պիոներ ուղարկեց՝ վոր էդպես բան չանեն, պիոներների համար «հաց» չբերեն, քանի վոր նրանք իրենց պաշարն ունեն։



Ձեր կանաչ արեվին մատաղ, կարմիր բալաներ

Ճաշից հետո, այրի Մոսանց Շողերի խոտհարքը հնձեցին, ու այսպես 7 որ հնձում եյին աշխատող ձեռք չունեցողների խոտհարքները։ Քաղաքացի մյուս պիոներները հնձվորների համար աղբյուրից ջուր եյին կրում կամ սրոցը մոտ բերում։ Յերբեմն փորձում եյին իրենք եվ գերանդի քաշել, բայց կամ ծայրն եյին թաղում թմբի մեջ, կամ խոտերի գլուխներն եյին կտրում։ Կային մի քանի ուժեղ պիոներներ, վոր էդ որերի ընթացքում համարյա սովորեցին գերանդի բանեցնել։

Հնձելու յերրորդ որը խաղ ու պարով, յերգ ու տաղով սկսեցին հավաքել չորացած խոտը, բուրներ անել ու սայլերով կրել գյուղ, դեզեր դնել։ Գյուղացի պիոներները, այսպես թե այնպես, ժամանակ եյին գտնում քաղաքացի պիոներներին ոգնելու, աշխատանքը ղեկավարելու, յեվ գործն առաջ եր գնում։

Անցավ յերկու շաբաթ. ու մի կիրակի եվ — յերբ գյուղի կոլեկտիվը մածուն ու ճուտեր եր նվեր բերել լագեր, նոր խորհուրդ ունեցան ու վորոշեցին՝ հաջորդ կիրակի «սարը» գնալ, զբաղվել գառնարած, հորթարած յերեխաների հետ — կազմակերպել նրանց, սարի ող ծծել, զվարճանալ ու վերադառնալ։

Ասածն արած եր։ Շաբաթ որը, դեռ արեվը մի հողամեկ բարձր եր, վոր յերկու կոլեկտիվները, կազմ ու պատրաստ, դուրս յեկան գյուղից։ Գեվորգի խոր-

հրդով քաղաքացի պիոներները վերցրել էին նաև իրենց վերարկուները, վորովհետև սարում գիշերը ցուրտ է լինում, բացի դրանից՝ «ո՞վ գիտե՝ սարի բան է, կարող է լավ անձրև գալ» — բացատրեց Կոստին։

Մութը վրա հասնելու ժամանակ պիոներները հասան բինային։ Ճիշտ է, սար բարձրանալու անսովոր լինելով՝ սաստիկ հոգնել ու քրտնել էին, բայց տպավորություն թողնելու համար, շարք կազմեցին ու կանոնավոր շարքերով, թմբուկի ազդակով մտան բինան։

Բինայում հովիվներն ու սարի կանայք անսահման ուրախացան նրանց տեսնելով, ու մեծ ջլպտոտ (շատ վոչխար ունեցող) Ալեքսանի ապին վոչխար մորթեց հյուրերի համար։



Պիոներները գնացին սարը

Հաջորդ որը, վաղը, պիոներները ծանոթացան սարի կյանքին, պանիր ու յուղ շինելը տեսան իրենց աչքով, դեռ Մալաք նանի խնոցի հարելուն էլ մասնակցեցին, լիքակոլոլ թարմ թան խմեցին, կով ու վոչխար կթելու նախնական հնագույն ձևը տեսան ու շատ բան գրի առան իրենց հուշատետրերում։ Անսահման հրճվանք պատճառեց նրանց, մանավանդ, վոչխարի կթից հետո գառն ու վոչխարի «մեր ըլելը», իրար խառնվելը։ Ապա՝ մի անպատրաստից ցերեկույթ տվեցին — ամեն մեկն իր շնորքը ցույց տվեց։ Հորթարածները, վոր սկզբում խրտնած հորթի նման, քաշվում ու հեռվից էին նայում, հետզհետե մոտեցան։

Գեվորգն ու Սուրիկը 12 հոգուց մի փոքրիկ կոլլեկտիվ կազմեցին լավ Թամարին (վորը 5 որ մնալու էր սարում) հանձնեցին։

Ճաշից հետո սարալանջի բազմերանգ ու բազմազույն ծաղիկներից փնջեր ու հավաքածուներ կազմելով՝ վերադարձան գյուղ ու լագեր։

Հաստատ լագերը հավաքելու, քաղաք գնալու ժամանակը. մի ամիսն անցել էր։

Այդ կարճ ժամանակում վոչ միայն պիոներները, այլ լավ գյուղացիները — բոլորն այնպես էին վարժվել, սիրել քաղաքացի պիոներներին, վոր ազգակի իրենցն ու հարազատ էին համարում նրանց։ Պիոներներից ամեն մեկն իր կոլլեկտիվն էր համարում քաղաքի կոլլեկտիվը ու բոլորի անունները, վոր խմբում լինելը, բնավորությունն ու շնորքը գիտեր։

Գնալու որը նորից ժողով ունեցան, եվ մի փոքրիկ միտինգ ու ցերեկույթ կազմակերպվեց, «պիոներական ազնիվ խոսք» տվեցին միմյանց՝ գրել իրար իրենց կոլլեկտիվի կյանքից ու հաջողություններից։

Յերկու կոլլեկտիվը խառը շարքով — գյուղից դուրս յեկան — արդեն հնձած արտերին հասան։ Այստեղ անկեղծ ու անսահման շնորհակալություն հայտնեցին միմյանց կրկին «ազնիվ խոսք» տվին գրել իրար, ապա Սուրիկն ու Գեվորգը համբուրվեցին ու բաժանվեցին։

Գյուղի կոլլեկտիվը կանգնեց ճանապարհի մի կողմը — իր թմբուկով ու դրոշակով. իսկ Սուրիկի կոլլեկտիվը, կանոնավոր շարքով, թմբուկի քայլերգով անցնելիս, նորից հնչեց «պատվի տա», «պիոներներ պատրաստ» — «միշտ պատրաստ» բազմիմաստ խոսքերը, ու նրանք առաջ անցան։

Յերբ արդեն մի 20 քայլ առաջ էին գնացել լավ Գեվորգը «ազատ եք» ասաց, փոքրիկ Վաչիկը՝ արցունքը հազիվ զսպելով՝ բարձրաձայն ճչաց.

— Վոր եսանց էին ա՜խ, ի՜նչ լավ է՜ր…

Հ. ՄԵՐԿՅԱՆ

## ԳԱՐՈՒՆԸ ՄԵՐ ՀԱՆԴԵՐՈՒՄ

Վաղ առավոտ վեր կացանք,
Ճամբա ընկանք դեպի հանդ.
Մեր կովչողը հրահանգեց —
«Դե, թմբկահար, թմբուկ զարկ»։
Դեղին լույսը արևի
Լցվեց կանաչ ձորակը,
Վոսկի հանդը գյուղերի
Փռվեց մեր վոտքի տակը։
Վարդեր, ծաղիկ, կանաչ, սեզ,
Արևի լույսով ծաղկած,
Նախշուն հավքեր հանդի մեջ՝
Գարնան բույրով արբեցած։
Սարալանջից նայում ենք
Գարնան կանաչ արտերին,
Սարով ձորով կանչում ենք
Մեր աշխարհի հավքերին։
Սարեր, ձորեր անցել ենք,
Նախշուն, ճերմակ ջան հավքեր,
Մեր աշխարհը թևել եք,
Զառ ու մետաքս ձեր թևեր։

ՄՕՏԵՑՋԱԼՆ

# ՌԻՉԻ ԲՈԴՍԵՆԸ ՅԵՎ ՀԱՐՐԻ ԿԵՐԿԼԵՅԸ

## ԼՈՆԴՈՆԻ ԳՈՐԾԱՐԱՆԱՅԻՆ ԹԱՂՈՒՄ

*Լոնդոնի այս թաղի տները ցածր են, փողոցները՝ լուռ։ Աղյուսե հին տները ձգվում են փողոցի յերկարությամբ, իրենց կյանքն իրենց մեջ թագցնելով։ Ճարպոտված, ժամանակից կեղտոտված տներում, մեքենաները տասնյակ տարիներ գործում են ամբողջ աշխարհում հայտնի «անգլիական» մահուդը։*

*Ցածր, միհարկանի պահեստատներն ընկած են փողոցի յեվ լայն բակի միջեվ, որի ներսը բարձրանում են գործարանի ծխացող խողովակները։ Նրանցից ցած, լայն բացված աչքերի նման՝ դուրս են նայում շենքի պատուհանները։*

*Արագ պտտվում են ճախարակները, խուլ թրխթրխկում են գործելու մեքենաները.*

*Գործարանը—դա մի փոքրիկ փողոց է. Կարմիր աղյուսից է կրասիլնյակը, կարմիր աղյուսից են պահելու տները. կարմիր աղյուսից են ամբարներն ու պահեստները, կարմիր աղյուսից են մեքենաների շենքն ու դպրոցը, ուր սովորում են բանվորների յերեխաները։*



*— Ռուսաստանում վատ բան չի կատարվում*

## ԿԱՌԱՎԱՐԻՉ ԿԵՐԿԼԵՅԸ, ՏԱՍՆԱՊԵՏ ՊԻՏԵՐԸ ՅԵՎ ԲԱՆՎՈՐ ԹՈՄԱՍԸ

*Միստեր Կերկլեյն այդ գործարանում մի փոքրիկ պաշտոնյա եր այն ժամանակ, յերբ այդ փողոցներով ծանր բարձած սայլերով ավտոբալիկան փոշխարների լվացված բուրդ եյին տանում։ Իսկ այժմ, յերբ բեռնակիր ավտոմոբիլներն այս ու այն կողմն են տանում մահուդը, նա այս գործարանի կառավարիչն է։*

*Թոմաս Բոդսենն այն ժամանակ ել բանվոր եր, հիմա ել մնացել է նույնը։ Միայն պատերազմն ստիպեց նրան առժամանակ հեռանալ գործարանից։ Նա ընկավ Ֆրանսիա, ապա, մի անհաջող կռվից հետո, գերի տարվեց Գերմանիա։*

*Այն միջոցին, յերբ միստր Կերկլեյը փոքրիկ պաշտոնյայից հիմնարկի կառավարիչ դառնալու ճանապարհն եր անցնում, նույն այդ միջոցին՝ Ջոն Պիտերը հասարակ բանվորից տասնապետ դարձավ։ Թոմաս Բոդսենի դրությունը չփոխվեց, թեյեվ պատերազմը բավական բան սովորեցրեց նրան։ Գերությունից՝ բացի անժամանակ սպիտակած մազերից՝ նա մի ուրիշ բան ել բերեց։*

## ՏԱՍՆԱՊԵՏ ՊԻՏԵՐԸ «ԴԱՋԳՅԱՃԻ ՄՈՏ»

*Թոմասն աշխատում եր գործարանում, հիանալի կերպով գիտեր իր գործը, այնպես որ Պիտերը, չնայելով իր բոլոր ջանքերին, չեր կարողանում նրան նեղացնել։ Պիտերը լարված եր Թոմասի դեմ, որովհետեվ Թոմասն ուղղում եր Պիտերի սխալները, յերբ նա սկսում եր պատմել պատերազմի մասին։*

*Մի անգամ Պիտերն իր դատողությունները եր տալիս Վերդենի սարսափների մասին, Թոմասն ընդհատեց նրան.*

*—Յես գիտեմ, որ Վերդենն իրոք մի սոսկալի բան է յեղել, բայց, Պիտեր, չե՞ որ դուք Վերդենի դեպքերն անց եք կացրել Լոնդոնում, այնպես՝ ինչպես իմ որդի Ռիչին, որն այն ժամանակ յերկու տարեկան եր։—Թոմասը շարունակեց — իսկ պատերազմի մասին, պարզն ասած, բոլոր սարսափները ծառայեցին հօգուտ սպեկուլյանտների, բանկիրների յեվ գործարանատերերի։*

*—Դուցե դու ուզում ես ասել, որ մեզ մոտ ել նույնը պետք է լինի, ինչ որ այժմ կատարվում է Ռուսաստանո՞ւմ—աղաղակեց Պիտերը զայրացած հայացք գցելով հակառակորդի վրա։*

*Թոմասը չփոթվեց.*

*—Յես կարծում եմ, որ Ռուսաստանում վոչ մի վատ բան չի կատարվում, մանավանդ մեզ՝ բանվորներիս նկատմամբ։*

*Մի քանի անհավոր լռություն տիրեց։*

*— Ագիտացիա մի անիր։*

## ՌԻՉԻ ԲՈԴՍԵՆ

*Այս խոսակցությունից հետո տարիներ անցան։*

*Ռիչի Բոդսենը, որի մասին հիշվեց խոսակցության մեջ, մի վայելչակազմ տղա յեր դարձել յեվ արդեն չորրորդ տարին եր, որ սովորում եր դպրոցում,—այն դպրոցում, որ շինված եր գործարանի հանդիպող փողոցում—կարմիր աղյուսից։*

*Պատերազմը վաղուց եր վերջացել։ Պիտերի յեվ Բոդսենի հարաբերությունը տարեց տարի ավելի վատանում եր։*

*Թոմասն ստիպված եր յերեք ամիս բանտ նստել՝ «քարոզելու համար»—ինչպես ասում եյին գործարանում։*

Բիլլին չախորեց դրա համար, բայց լրջացավ։

Իսկ երբ աշակերտներից մեկն ակնարկեց Բիլլին — նրա հոր մասին, նա հանգիստ պատասխանեց.

— Հայրիկս ինձ հրամայել է ասել, վոր վոչ վոք վոչ մի գործ չունի նրա քաղաքական համոզմունքների հետ։ Նույնը չեմ ձեզ և վերաբերում, պարոն ուսուցիչ։

Երբ մանկավարժական խորհրդի նիստին, վիրավորված ուսուցիչը հարց բարձրացրեց այդ մասին, դպրոցի տեսուչն առարկեց.

— Ես կարծում եմ, վոր Բողսենի նկատողությունը ճիշտ ունի։ Պարոնայք, մենք չպետք է խառնվենք քաղաքական հարցերին, մանավանդ, վոր մենք բանվորական շրջանի հենց սրտումն ենք գտնվում։ Քաղաքականության վերաբերմամբ մենք պետք է շատ զգույշ լինենք։

Սա արդեն այն ժամանակ էր, երբ գործարանի բանվորները Թոմաս Բողսենին միաձայն ընտրել էին ամբողջ շրջանի մանածագործների արհմիության վերստուգիչ հանձնաժողովի անդամ։

Ջոն Պիտերը շատ անգամ էր հայտնել միստեր Կերկլեյին.

— Պարոն կառավարիչ, Բողսենը վտանգավոր ագիտատոր է։ Այդ մարդը Գերմանիայում գերի լինած միջոցին մտերմացել է ռուս բոլշևիկների հետ, վորոնք խիստ մեծ ազդեցություն են ունեցել նրա վրա։

Չափազանց անդուրեկան բան է, այդպիսի վտանգավոր հայացքների տեր մարդուն գործարանում պահելը։

— Հեռացրեք նրան, Պիտե՛ր։

— Լսում եմ, պարոն կառավարիչ։

## ԴԵՊԻ ՁԱԽ Է ՔԱՅԼՈՒՄ

Միստեր Կերկլեյի ավտոմոբիլը շուռ յեկավ գործարանի հանգիստ փողոցով։



Ուշ գիշեր էր։ Դ ա գ ի լապտերներն արդեն վառվում էին։ Մայթի վրա մի ծ ա ն ո թ կերպարանք յերևաց։

Ավտոմոբիլը կանգ առավ։

— Դո՞ւք եք, պարոն Բողսեն։

— Այո՛, այո՛, յես եմ։

— Նստեցե՛ք, յես ձեզ կտանեմ։

— Շնորհակալ եմ, պարոն կառավարիչ։

Միստեր Կերկլեյը նստած է Բողսենի կողքին։

— Այսպես ուշ, եդ վո՛րտեղից եք գալիս։

— Հանձնաժողովի նիստից։ Մի քիչ ձգձգվեց։

— Է՛, ի՞նչ կասեք դուք այն մասին, վոր պարլամենտի գլուխը—բանվոր մինիստր է—Մակդոնա՛լդը։

— Դեռ վոչինչ...

«Դեռ»...Բայց ախր սահմանադրյա կամմունի զմե.

Ես հասել եմ տեղս, պարոն կառավարիչ։ Բողսենը դուրս յեկավ ավտոմոբիլից։

— Ի միջի այլոց, իմ վորդի Հարրին ասաց ինձ, վոր նա յերկու օրս ծանոթացել է ձեր վորդու հետ։

— Բիլլի՞։

— Այո՛։ Նրանք միևնույն դպրոցն են գնում։ Ես Հարրիին տեղափոխեցի մեր գործարանին կից բանվորական դպրոցը։ Ախր չպետք է մոռանալ, վոր մենք ապրում ենք դեմոկրատական ժամանակներում։ Թող մեր յերեխաները միասին սովորեն, վարժվեն մեկ-մեկի։ Տեսնո՞ւմ եք, յես դառնում եմ իրոք իսկական անգլիացի — դեմոկրատացա՛ր։

— Ցտեսություն, պարոն կառավարիչ։

## ՄԻՍՏԵՐ ԿԵՐԿԼԵՅԸ ԴԵՄՈԿՐԱՏ

— Իմ հայրն ուզում է, վոր յես քեզ մեզ մոտ հրավիրեմ։

— Շնորհակալ եմ, Հարրի։ Ես կգամ քեզ մոտ, բայց վոչ այսօր։ Այսօր շատ դաս ունենք, իսկ յես սիրում եմ տանը պարապել։

— Այդ դեպքում՝ յես կգամ քեզ մոտ։

— Գնանք։

## ԻՆՉ ՎՈՐ—ԱՅՆՊԵՍ ՉԷ...

— Ինչ լավ է քեզ մոտ, Բի՛լլի։

Յերկու փոքրիկ սենյակ, մի խոհանոց։ Այստեղ ավելի լավ է քան մեզ մոտ։ Մենք շատ սենյակներ ունենք, բայց այսպես դուրեկան չեն։ Ապա ո՞ւր է քո մայրիկը։

— Մայրիկս հայրիկիս հետ միտինգի է գնացել։

— Միտինգում նրանք ի՞նչ են անում։

— Հայրս կոմունիստների կողմից զեկուցող է։

— Ես դեռ յերբեք չեմ յեղել միտինգում, հետաքրքի՞ր է։

— Շա՛տ։

— Մի անգամ ինձ էլ տար, հա՞։

— Բայց քո հայրը կբարկանա։

— Հայրի՞կս։ Բայց մի՞թե նրան պետք է ասել այդ մասին։

## ՄԻՍՏԵՐ ԿԵՐԿԼԵՅՆ ՍՏՈՒԳՈՒՄ Է

— Հը՛, լա՞վ եր Բիլլենց մոտ։

— Շատ։ Բեռի Թոմասն այնպես հետաքրքիր մարդ է՛։ Նա շատ է աշխատում, կարդում է։ Նա յերբեմն խոսում է միտինգում։

— Վո՞րտեղ։

Կոմմունիստների մոտ։

— Եդ դու վո՞րտեղից գիտես։

— Բիլլին ասաց ինձ։

— Իսկ դու չգնացի՞ր միտինգի։

— Չե՛, չե, չգնացի։

## ՈՒՂՂԱԿԻ ՀԱՐՑԵՐ

— Ռիչի՛, ասա՛, իմ հայրը բուրժո՞ւա չէ։

— Միստր Կերկլե՞յը։ Ի՞նչ ասեմ քեզ։ Ի հարկե բուրժուա չէ, բայց կարող է պատահել — վո՛չ բոլորովին։ Նա ծառայում է բուրժուազիային։

— Բայց յեթե բանվորները գործարանը վերցնեն, նա կծառայի բանվորներին։

— Այո՛, յեթե հրավիրեն նրան։

— Հիմար, քո առանց կառավարիչի գործարան կլինի՞։

— Դա ճիշտ է։

— Գիտե՞ս, մենք քո հայրիկին կհարցնենք, տեսնենք նա ինչ կասի այդ մասին։

— Լա՜վ։

— Ռի՛չի, ա՛սա, յես է՞լ եմ բուրժուա։

— Դո՛ւ, իհարկե հա՛։ Բայց յեթե դու ուզում ես պրոլետար լինել, ապա դու պետք է ազնիվ խոսք տաս, վոր 5-րդ դասարանն ավարտելուց հետո կոմսոմոլ կդառնաս։

— Ազնիվ խո՛սք, կդառնամ։

— Այդ դեպքում, տո՛ւր ձեռքդ, ընկեր։

## ՎՈՍԿԵ ԹԱԿԱՐԴ

Ռիչին մի քանի անգամ գնաց Հարրիի մոտ, դիտեց նրա գրքերը, վորոնցից միայն յերկուսը հավանեց։ Տեսավ նրա մահուդի նմուշների ալբոմը։

Ժամը հինգին սուրճ խմեցին։ Ու թեյեվ Ռիչին իր կյանքում առաջին անգամն եր այդպիսի համեղ սուրճ խմում, բայց նա և՛լ ուրիշ անգամ չեր ուզում գնալ Հարրիի մոտ։

— Մեզ մոտ լավ է, վոչ վոք չի խանգարում, — ասաց նա։

— Ձեր կարասիքը շատ քնքուշ, կոտրատվող է յեվ չափազանց շատ հայելիներ կան։ Յես վախենում եմ այդ բաներից։

— Դե լա՛վ, արի՛ քեզ մոտ լինենք։

## ՄԻ ՔԱՅԼ ՅԵՏ

— Ռիչի։

— Ի՞նչ է, հայրիկ։

— Հարրի Կերկլեյի մոտ ի՞նչ եք անում դո՛ւք։ Ինչպես տեսնում եմ, դուք շատ եք մտերմացել։

— Այո՛, մենք մտերմացել ենք։ Հարրին լավ տղա է։

— Տե՛ս, ինչպես արա, վոր դրանից մի վատ բան չծագի։

Լա՛վ չէ, վոր մենք, բանվորներս, աղաների հետ բարեկամանանք։

— Յես գիտեմ, հայրիկ։

## ԿԵՐԿԼԵՅԻ ՀԱՇԻՎՆԵՐԻՑ ԴՈՒՐՍ

Հարրի, լսի՛ր, թե յես ինչ եմ ուզում ասել քեզ։ Յես գիտեմ, վոր դու լավ տղա յես յեվ չեմ ուզում քեզ վորյեվե վատ բան արած լինել։ Բայց,



Բանն արյունի հասավ

դե՛, տեսնում ես՛, եղի, յես բանվորի վորդի յեմ, իսկ դու — գործարանի կառավարչի տղան յես։

— Դրանով դու ուզում ես ասել, վոր յես և՛լ քեզ հետ բարեկամություն չանե՞մ։

— Այո՛։

— Բայց ինչու։ Չլինի՞ թե դու չես հավատում իմ ազնիվ խոսքին։

— Գիտես ի՞նչ, Հարրի, կոմսոմոլ դառնալու քո խոստումը շատ մեծ փորձանքների հետ է կապված։ Մոտ օրերս անգլիական կապիտալիստների դեմ ցույց կլինի։ Նրանք ռուս պրոլետարներից ուզում են յետ առնել այն փողերը, վոր տվել են ցարին յեվ գեներալներին՝ Խորհուրդների դեմ կռիվ մղելու համար։

— Է՛, հետո ի՞նչ։

— Համարյա մեր ամբողջ դասարանը պետք է մասնակցի այդ ցույցին։ Դու գիտես, վոր մենք կարմիր յերիտասարդության միություն ենք կազմակերպել։

— Յես էլ եմ ուզում ցույցին մասնակցել։ Ի՞նչ պիտի անենք։

— Դրոշակներ կրել, թերթիկներ ցրել. կերգենք ու կաղաղակենք — «Ձեռներդ հեռու Խորհուրդներից»։

— Օլ՛ ռա՛յտ*) Վո՞րտեղ ենք հավաքվում։

— Դպրոցի առաջ — վաղը, ժամը տասին։

## ԴԵՄՈԿՐԱՏ ԿԵՐԿԼԵՅԸ ՀՐԱՄԱՆ Ե ՍՏԱՆՈՒՄ

— Միստր Կերկլեյ, ինչպես լսել եմ, իմ գործարանն էլ է պատրաստվում ցույցին մասնակցելու։ Դա չպետք է թույլ տալ։ Դուք գիտեք, վոր յերկու հարյուր հազար ֆունտ ստեռլինգի մահուդի այն պաշարը, վորը մնացել եր համաշխարհային պատերազմից, յես վարկով տվեցի գեներալ Դենիկինին։ Մի՞թե դուք կարծում եք, վոր յերկու հարյուր հազար ֆունտ ստեռլինգը յես կնվիրեմ Մոսկվային։

— Ներեցեք, սըր, վոր ընդհատում եմ ձեզ, բայց չէ վոր գեներալ Դենիկինը...

*) Անգլերեն է, նշանակում է՝ շատ լավ։

— Դուք ուզում եք ասել, վոր դա միլիոնավոր չի։ Ինձ համար մեկ ե։ Պարոն կառավարիչ, խնդրում եմ այնպես անեք, վոր գործարանի տրամադրության տակ բավականաչափ վոստիկաններ լինեն, յեվ աշխատեցեք այնպես անել, վոր իմ բանվորները չմասնակցեն այդ բանին։

Մ՞իթե իմ բանվորներն իմ դեմ դուրս կգան։

## ԲԱՆՆ ԱՐՅՈՒՆԻ ՀԱՍԱՎ.

Բանվորների մասսան առաջ, դրոշակներով ու պլակատներով, վորոնց վրա գրված եր — «Ոչ մի պրոլետարիատ պատասխանատու չե ցարի ու գեներալների պարտքերի համար» — առաջ շարժվեց։ Հնչեցին զվարթագին բառերը. «Ցեխ՛ը, ում կյանքը անիծվել ե...» Վոստիկանական բաժնի պետը կարգադրություն ե ստանում ներքին գործոց մինիստրությունից — «Վերջ տալ անկարգությանը»։ Դոփում են ձիերի սմբակները։ Շրխկում են ռեզինե զավազանները։

Դրոշակները խառնարծվում ու վայր են ընկնում մայթերին։

— Յերեխաներին, յերեխաներին պաշտպանեք։ Դագաննե՛ր։ Չե՞ք տեսնում, վոր դրոշակներն յերեխաների ձեռքին են։ Դագաննե՛ր։



Հայր ու վորդի

— Վա՜յ ա՜յ... — ու դրոշակն ընկնում ե Հարրիի ձեռքից։ Նա ընկնում ե ձիերի վոտքերի տակ։ Ընկնելիս նա տեսնում ե, թե ինչպես Բիլլի ճակատին մի մեծ կարմիր շերտ կա... Արյո՜ւն...

## ՓՆՏՐՈՒՄ ԵՆ ՀԵՌԱԽՈՍՈՎ.

Կառավարիչն ու իր կինը հուսահատ դրության մեջ են։ Ո՞ւր ե Հարրին։ Պետերը ճիշտ եր ասում. պետք եր ձերբակալել Բողանեին։ Պատճառ կարելի յեր գտնել։ Բայց ո՞ւր ե յերեխան։

Հեռախոսի զանգը։

— Միստեր Կերկլե՞յն ե։ — Այո՛։

— Ավտոբուսային կառքեղենի ընկերության կառավարիչը՞։ — Այո՛։

— Դուք Հարրի անունով վորդի ունե՞ք... Քանի՞ տարեկան ե։ Տա՞սն ե։ Այդ դեպքում խնդրում եմ ավտոմոբիլ ուղարկեք նրան բերելու... Այո՛, նա վողջ ե։ Շորն ե մի քիչ պատռվել... փոքրիկ միստերը քերծվածք ե ստացել... Չնչին...

Հարրիին ավտոմոբիլով բերում են հոր մոտ։

— Յես ուզում եմ նրա հետ մենակ խոսել։ Խնդրում եմ մի՛ անհանգստանա — ,ասաց կառավարիչը կնոջը։

Յերկուսով մնացին։

Ավագ միստեր Կերկլեյը չեր կրտսեր միստեր Կերկլեյը։ Յերկուսն ել ջղայնացած, յերկուսն ել հուզված։ Բայց Հարրին ավելի հանգիստ ե թվում։ Նա նայում ե հորը, վորը անհանգիստ — անկյունից անկյուն ե քայլում։

Միստեր Կերկլեյը չափազանց զբաղված ե։

Միստեր Կերկլեյի հայացքն ընկավ Հարրիի պատռված շորի վրա։ Նա կանգնած եր սեղանի մոտ, ձեռքը վիրավոր, գլխարկը կորցրած։ Ի՞նչ կասի այս մասին լորդը, վոր իմանա, յեվ նա անպատճառ կիմանա։ Խայտառակությո՜ւն։

— Դու ի՞նչպես ընկար այդ ցույցի մեջ։

— Կամավոր կերպով, հայրիկ։

— Ինձ հայրիկ մի՛ ասիր։ Կամավո՜ր։ Ինչո՞ւ դու չխորհրդակցեցիր ինձ հետ կամ մայրիկի հետ։

— Ախր ամբողջ դասարանն այնտեղ եր։

— Ամբողջ դասարա՜նը։ Ամբողջ դասարանը կարող եր լինել այնտեղ։ Նրանք բոլորը բանվորների յերեխաներ են ու կարող են յեվ պետք ե լինեյին ցույցին։ Իսկ դո՞ւ... Ի՞նչպես կարողացար այդպիսի բան անել։

Լռություն տիրեց։

Միստեր Կերկլեյը շարունակեց անհանգիստ առաջ ու յետ քայլել։

— Դու մոռացա՞ր, վոր դու գործարանի կառավարչի տղան ես։ Թե՞ դու չգիտես, վոր քո կողմից հանցանք ե փողոցային ցույցին մասնակցելը։ Դե՛, պատասխանիր։

— Հա՛յրիկ, դու ինքդ տվիր ինձ այդ գիրքը, — մեղմ կերպով ասաց Հարրին։

Դրանով ի՞նչ եր ուզում ասել նա, ինքն ել չգիտեր։ Բայց հայրը միանգամից զգաց հարցի ամբողջ սրությունը։ Բարկությո՜ւնը, չարությունն ու զայրույթը համակեցին նրան։ Նա մոտ թռավ տղային յեվ, իր արածի մասին իրեն հաշիվ չտալով, խփեց Հարրիի դեմքին։

— Դու.. դու...— հի...մա՛...ր։

Հարրին իր գորշ աչքերը բարձրացրեց հոր վրա։ Նրա դեմքին չորս կարմիր շերտեր եյին այրվում։ Հարրին նայում եր հորը, ուղիղ նրա աչքերին, վո-

րանը պատրաստ էին դուրս թռչել բներից, յավ չէր կարողանում հայացքը հեռացնել։ Առաջին վայրկյանին նրա հայացքը զարմացք էր արտահայտում։ Նրա ուղեղում տեսարանները հաջորդում էին մեկը մյուսին։ Տեսնում էր նա Բիչիի արյունոտված ճակատը, արցունքը խեղդում էր նրան։

Պատուհանից լսելվում էր, վոր փողոցով, համաչափ քայլերով, մարդ է գալիս... Հարրին ճանաչեց նրան։ Դա ծեր Բոզսենն էր։ Նրա աչքերը փայլեցին յավ մի րոպե ցավը մոռացավ։ Նա գլուխը բարձրացրեց յավ՝ առանց հորը նայելու դուրս գնաց սենյակից։

Միստեր Կերկլեյն ուզում էր կանգնեցնել նրան, բայց Հարրին քայլում էր շատ հաստատ ու վճռական կերպով։ Միստեր Կերկլեյը բարացավ։

Նրա համար պարզ էր, վոր յեթե փողոցը վրա աղաղակի, անհաջողություն կհանդիպի նրան յետ դարձնել չէր կարող։

---

# ԿԵՆՑԱՂԻ ՖՐՈՆՏ

*(Պիոներական յերկձայն յերգ)*

Խոսք՝ ՊԵՏՄԱՌԻ

Յեղանակ՝ ԵԴ. ԿԶԱՐԹՄՅԱՆԻ



Մեր փոքրիկ թաթերով քանդում ենք այսօր
յերեկվա կենցաղը խավար ու մոլոր,
վհատել չգիտենք, կա վաղվա գուշակ,
ու կենցաղ պիտ՝ պարզենք, վորպես դրոշակ։
Կենցաղի ֆրոնտի բանակն ենք մենք,
Դե, քանդենք հինը, Նորը ստեղծենք։

Կաշկանդվել եր միտքը մարդկային հզոր.
կենցաղին զազիր հազարներն են զոհ,
ադաթներն իշխող, սովորույթը համառ
ուղեկցել են խեղճին, որրանից մինչ մահ։
Կենցաղի ֆրոնտի և այլն...

Յելնենք մենք, պիոներներ, թմբկահարելու,
պատանեկության կովի կոչելու,
Թող հնչեն փողերը, յելնենք մենք մարտի,
պայքարով պիտ՝ կերտել կենցաղ Նոր կյանքի։
Կենցաղի ֆրոնտի և այլն...

---

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

## ՄԵՐ ՄՈՍԻՆ

Պիոներ է մեր Մոսին.
Կարմիր վզկապը ուսին
Ման է գալիս քաջի պես,
Համարձակ ու խնդերես։

Հա՛ գնում է մարզանքի,
Ծով է մտքի ու խելքի,
Դաս է կարդում Ջրի պես,
Միշտ մաքուր են շոր, յերես։

Պիոներ է, պիոներ,
Համարձակ ու անվեհեր.
Վոր մեծանա, պիտ՝ դառնա
Գյուղխորհրդի Նախագահ։

Ս. ՆՑԱ.

# ԿԼԵԿՉՈՒ ԱՇԱԿԵՐՏԸ

(Հիշողություններ)

*Այս հիշողությունների մեջ հեղինակը նկարագրում է պարսիկ մի յերեխայի անխնա շահագործումն ու նրա անօգնական ու դառն վիճակը։ Այսպիսի յերեխաներ շատ կան Պարսկաստանում. նրանց թիվը հազարների, տասնյակ հազարների յե հասնում։ Մեր պատանի ընթերցողը, կարդալով այս հիշողությունները, խոր ատելությամբ կլցվի դեպի շահագործող կարգերը և անպայման կհամեմատի այդ բոլորը խորհրդային կարգերի հետ, վորտեղ յերեխաներն ու պատանիները չեն շահագործվում, այլ ազատ պայմաններում են ապրում և խառնվում են հոկտեմբերիկների ու պիոներների շարքերը։*



Այդ շատ վաղուց էր. տասնչորս տարի սրանից առաջ։ Յես ապրում եյի այստեղից շատ հեռու. Պարսկաստանի Սպահան քաղաքի մոտ մի գյուղում։

Ամեն առավոտ, ժամի 8-ին, գրքերի ու տետրակների կապոցը թեվիս տակ, յես դուրս եյի գալիս մեր տնից, անցնում եյի մսագործ Մաթոսի խանութի առաջից և առվագլխով գնում եյի կաթոլիկ կույսերի դպրոցը։

Առվագլուխ կոչվում եյին յերկու մեծ առուների կողքին ընկած նեղ փողոցները, վորոնց վրա ցեխե միահարկ տներ եյին շինված։

Առվագլխի ճիշտ այն տեղում, վորտեղով յես ամեն օր անցնում եյի, յերկու առուների միջև ընկած տարածության վրա, գտնվում էր կլեկչի Իսմայիլի խանութը։

Իսմայիլի խանութը գտնվում էր յերկրորդ առվի ճիշտ կողքին։ Խանութի յերկարությունը հազիվ վեց քայլ և լայնությունը չորս քայլ կը լիներ։ Պատերը վաղուց արդեն սևացել եյին ծըխից ու մրից և այլևս յերբեք չեյին սպիտակելու։

Խանութում աշխատում եյին հինգ հոգի — վարպետ Իսմայիլը, նրա օգնականը և յերեք աշակերտները։ Աշակերտներից մեծը կլիներ հազիվ 14 տարեկան, միջակը՝ 12, իսկ փոքրը՝ Մեհդին՝ հազիվ 9—10 տարեկան։

Ամեն առավոտ, առվագլխով անցնելիս, յես մի րոպե կանգնում եյի ուստա Իսմայիլի խանութի առաջ։ Միշտ միևնույն տեսարանը. աշակերտներից մեկը նստած՝ փուքսն էր փչում՝ պըղնձե ամանները տաքացնելու կամ կլայեկը հալելու համար։ Վարպետը հերթով վերցնում էր իրար վրա դարսած պղնձե ամանները — վորոնք այնքան շատ եյին, վոր քիչ էր մնում տասատաղին կպչեյին — և տալիս էր աշակերտներին «փայլեցնելու»։

Մեհդիին միշտ տեսնում եյի մի կաթսայի կամ պղնձե ուրիշ ամանի մեջ կանգնած՝ վոտքերի վրա պտտվելիս։

Պղնձի մեջ լցնում եյին մոխիր, ավազ և քիչ ջուր, վորից հետո աշակերտը բոբիկ վոտքերով մտնում էր նրա մեջ և պատին ամրացըրած փայտից բռնելով՝ պտտվում։ Մեհդին պըտտվում էր ժամերով, այնքան՝ մինչև պղինձը կսկսեր փայլել, վորից հետո նա դուրս էր գալիս պղնձի միջից, լվանում էր ամանն առվում, վերցնում մի ուրիշ աման, մեջը մոխիր, ավազ ու ջուր լցնում և շարունակում պտտվել։ Յեվ այդպես ամբողջ օրը, առավոտից՝ յերեկո։ Յես զարմանում եյի, թե ինչպես Մեհդու գլուխը չի պտտվում, թե ինչպես նա ամբողջ օրը բոբիկ վոտքերով պտտվում է պղնձի ամանի մեջ, ավազի ու մոխրի վրա, և նրա վոտքերը չեն ցավում։ Յես զարմանում եյի, թե ինչքան է անխիղճ ուստա Իսմայիլը, վոր նրան ամբողջ օրն աշխատեցնում է։

Մեհդու և մյուս աշակերտների վիճակն ավելի սոսկալի յեր ձմեռը։ Առվագլխի առուների ջուրը սառում էր, ձյունը պատում էր փողոցները, բայց կլեկչի Իսմայիլի խանութում վոչ

մի ժամ աշխատանքը չեր դադարում։ Յես խըղճում եյի Մեհդուն և մյուս աշակերտներին, բայց յես վոչինչ անել չեյի կարող։

Մի օր էլ յես ականատես յեղա ամենասըրտաճմլիկ մի տեսարանի։ Դպրոցից վերադառնում եյի. ուստա Իսմայիլի խանութից 20—30 քայլ հեռու եյի՝ յերբ լսեցի ինչ վոր մեկի ճիչ։

Վազեցի առաջ։ Ուստա Իսմայիլը, իր խանութի մեջտեղը կանգնած, քացով ու բռունցքով ծեծում եր մեկին։ Ավելի մոտեցա. ծեծվողը Մեհդին եր. նա վոչ մի ընդդիմադրություն չեր ցույց տալիս, միայն յերբեմն յերբեմն ճչում եր։ Ուստա Իսմայիլն անողոք եր. նա շարունակում եր ամբողջ ուժով ջարդել Մեհդու առանց այն էլ փոքր մարմինը։

Իսկ տասը քայլ հեռու կանգնած եր ամանը—փոստիկանը, նայում եր և ծիծաղում։

Յես կանգնեցի մի քանի րոպե էլ. հետո դանդաղ հեռացա։

Ամբողջ օրը չկարողացա մոռանալ ուստա Իսմայիլի խանութի ծանր տեսարանը։

— Ինչու յեր ուստան ծեծում Մեհդուն։

— Ի՞նչ եր արել Մեհդին, վոր այդպիսի ծանր պատիժ եր ստանում։

Այս հարցերն անկողնում էլ տանջում եյին ինձ։ Գիշերն էլ յերազում տեսա Մեհդուն։ Յերազը չեմ հիշում, մոռացել եմ։

Առավոտյան, սովորական ժամին, տանից դուրս յեկա՝ դպրոց գնալու։ Հենց մեր փողոցի ծայրին, սապոգործ Մաթոսի խանութի դռան, հանդիպեցի Մեհդուն։

Յես զարմացա, վոր այսօր նա այդքան ուշ եր աշխատանքի գնում։

Մոտեցա նրան։

— Ինչու յեր յերեկ ուստա Իսմայիլը քեզ ծեծում—հարցրի։

Սկզբում Մեհդին չուզեց պատասխանել, բայց, յերբ յես շարունակեցի հարցեր տալ, նա պատմեց.

— Յերեկ առավոտյան յես հիվանդ եյի. մեծ դժվարությամբ եյի աշխատում. կեսօրին այնքան թուլացա, վոր էլ չկարողացա կանգնած մնալ, նստեցի։ Հենց եդ ժամանակ ներս մտավ վարպետը. նա բարկացած եր. յերևի կռվել եր մուշտարիների հետ. ինձ նստած տեսնելով, նա հայհոյելով հարձակվեց վրաս ու սկսեց ծեծել..

Մեհդին քիչ եր մնում լաց լիներ, իսկ յես վոչ մի խոսք չեյի գտնում նրան մխիթարելու, չգիտեյի ինչ ասեմ. շփոթվել եյի, մտածում եյի ինչ վոր բանի մասին. բայց թե ինչի՞ մասին, չեյի հասկանում։

Այդպես լուռ մենք գնացինք մի քանի րոպե։ Հետո յես նորից հարցրի.



— Իսկ այսոր ինչու յես ուշ գնում աշխատանքի, չէ՞ վոր ուստա Իսմայիլը նորից կարող է ծեծել, գուցե նորի՞ց հիվանդ ես։

Մեհդին այլևս չկարողացավ զսպել իրեն և սկսեց հեկեկալ. վերջը նա նորից խոսեց.—

— Այսոր առավոտ հայրս էլ ծեծեց ինձ. նա լսել եր, վոր վարպետն ինձ ծեծել է, և բարկացել եր, վոր յես ինձ լավ չեմ պահել...

Քիչ հետո մենք անցանք առվագլխի առաջին առվի կամուրջի վրայով և հասանք ուստա Իսմայիլի խանութին։ Մեհդին արագ գնաց դեպի խանութը, իսկ յես գլուխս կորացրած առաջ անցա։



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԻՏԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԿՏԻՎԸ ՀԱՎ ՊԱՀԻ

*Պիոներական կոլլեկտիվի համար մեծ նշանակություն ունի հավ պահելը։ Ամենից առաջ այն նշանակությունն ունի, վոր պիոներները կսովորեն՝ թե ինչպես հարկավոր է հավ պահել, իրենց սովորածը կկարողանան գործադրել ծնողների տնտեսության մեջ։*

*Գուցե՞ շատերին զարմացնի այս միտքը,—ի՞նչպես* **թե հավ պահել պիտի իմանալ**: *Մի՞թե եղքան մեծ բան է հավ պահելը, բոլորն էլ պահում են և այդ առանձին գիտելիք ու խնամք չի պահանջում։*

*Վո՛չ, կասենք մենք, ամեն պահելը՝ պահել չի։ Մի քանի թվերով հաստատենք մեր ասածը։*



*Շարժական հավանոց*

*Հայաստանում* **713,063** *հավ կա, իսկ բնակիչների թիվը մոտ* **876** *հազար է. ուրիշ խոսքով՝ յուրաքանչյուր բնակչին մի հավ էլ չի հասնում։*

*Բայց, օրինակ, Դանիայում* **2,172,205** *ազգաբնակություն կա, նրանք ունեն* **17,803,000** *հավ. ուրիշ խոսքով՝ մեկ բնակչին, Դանիայում, 8 հավ է հասնում։*

*Մեր տեղական հավերը տարեկան* **120** *ձու չեն ածում, իսկ նրանցը՝* **250—300** *ձու։*

*Այստեղից տեսնում ենք, վոր հավ պահելու մեջ տարբերություններ կան։*

*Յեթե կոլլեկտիվը հավ է պահում, նա պիտի չմոռանա և այն, վոր ինքը հավերից վորոշ օգուտ, հասույթ էլ պետք է ստանա, վորպեսզի հնարավոր լինի հավերին կեր, բներ, ամաններ գնելու ծախսերը հոգալ, մյուս կողմից էլ, կոլլեկտիվի նյութական ֆոնդն ուժեղացնել։*

*Պիոներական կոլլեկտիվը պիտի աշխատի ազնվացեղ հավեր ձեռք բերել, վորովհետև նրանցից ստացվող օգուտն ավելի շատ կլինի և, վորն ամենագլխավորն է, օրինակելի տնտեսություն կունենան ու պիոներները հավ պահելու գործն ավելի լավ կսովորեն։*

*Ազնվացեղ հավի ձվի համար 50 կոպեկից մինչև 1 ռուբլի արժե։ Իսկ ազնվացեղ հավը վաճառվում է հատը 5–6 ռուբլով։*



*Ուռենու ճյուղերից գործված՝ ձու ածելու հավաբուն*

*Յեթե կոլլեկտիվը մի 20 հատ ազնվացեղ հավ պահի, տարեկան 200-300 ռուբլի մաքուր յեկամուտ կունենա։ Դրանով թե իր, կոլլեկտիվի կարիքները կհոգացվեն և թե կոլլեկտիվը կկարողանա օգնել չքավոր պիոներներին։*

*Մեր գյուղացիները կկարողանային հավերից ավելի մեծ օգուտներ ստանալ յեթե կարողանային ամառվա ընթացքում հավերին համաճարակներից (վարակիչ հիվանդություններից) պաշտպանել։*

*Դրա համար, ամենից առաջ, հարկավոր է հավանոցը, ձու ածելու բները* **մաքուր պահել**: *Հավանոցն անպայման պիտի կրով սպիտակացրած լինի։ Շատ*



*Կերաման—սա նրանով է լավ, վոր հավը վոտներով չի կարող փչացնել կերը*

*լավ կլինի, յեթե յուրաքանչյուր 3 հավի համար ձու ածելու մի բուն պատրաստվի։ Այստեղ նկարներով ցույց ենք տալիս բների տեսակները, վորպեսզի պիոներներն իրենք պատրաստեն։*

*Հետո, կոլլեկտիվը կարող է իր հավերի համար վոչ թե մի շենք հատկացնի, այլ կոոպերատիվից գնելով ապրանքներից ազատված մեծ արկղ, նրանից հավանոց պատրաստել։*

*Ամառվա ընթացքում հավերն այնքան կերի պահանջ չեն ունենա վորովհետև կանաչը նրանց համար անփոխարինելի կեր է։ Բայց, այնուամենայնիվ, յերեկոները հարկավոր է 20 հավին 400 գրամ գարի կամ մանրած [illegible] տալ։*

*Մեր յերկրում շատ է տարածված հավերի քոսը, վորը յերևում է հավի վոտներ սպիտակելուց։ Դրա առաջն առնելու համար հարկավոր է*



*Ջրաման*



*Սա գործ է ածվում թե կերի և թե ջրի համար*

*հավի վոտները մաքուր լվանալ և թաց վոտներին նավթ քսել։ Այդպիսով նրանք կառողջանան։ Հիվանդ հավերին հարկավոր է առանձնացնել առողջներից։*

*Այն կոլլեկտիվները, վորոնք ցանկանում են ձեռնարկել այս գործը, մեծ հաճույքով կպատասխանենք նրանց բոլոր հարցերին, թե «Պիոների» և թե անհատական նամակների միջոցով։*

**Ս. Մարջանյան**

---

**ՊԻՈՆԵՐԸ ՆՈՐ ԳՅՈՒՂԻ ԿԱՌՈՒՅՑՈՂԸ ՊԻՏԻ ԼԻՆԻ՝ ԴՐԱ ՀԱՄԱՐ ՆԱ ՊԻՏԻ ԼԱՎ ԻՄԱՆԱ ՆԱԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ**

# ՅԵՐԿՈՒ ԶՐՈՒՅՑ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՅԵՎ ՄԱՐԴՈՒ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

Գիտե՞ք, մեր յերկիրը, եվ հողագունդը մի մեծ, շատ մեծ գիրք ե. հողագնդի ամեն մի շերտը գրքի թերթն ե, վորտեղ գրված ե յերկրի պատմությունը, նրա գլխից անցածը։ Եվ հետաքրքիր գիրքը կարդացել են ուսումնական մարդիկ, վորոնց ասում են բնագետներ, յերկրաբաններ։ Սրանք էդ գիրքը կարդալով իմացել են վոչ միայն են, թե ինչպես ե առաջացել հողագունդը, այլ և են՝ թե ինչ բույսեր են աճել առաջ նրա վրա և ինչ կենդանիներ են յեղել և կան նրա գոյության որից մինչև հիմա։ Իսկ յերկրի գոյությունը շատ միլիոն տարիներ՞ե հաշվվում։ Յերկրի շերտերում պահպանվել են եվ բույսերի, եվ կենդանիների տեսքը, տիպը, ձևերը, վոսկորները, կմախքները, կազմվածքները, վորոնք շատ անգամ քարացած դրությամբ ել գտնվել են։ Ուսումնականներն իմացել են, վոր յեղել ե մի ժամանակ, յերբ մեր յերկրի վրա ապրելիս են յեղել ուրիշ տեսակ կենդանիներ, վորոնք շատ են զանազանվում մեր հիմիկվա տեսած կենդանիներից։

## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

Յերկրի վրա ապրող զանազան տեսակ կենդանիները հայտնվել են վոչ թե միանգամից, այլ հայտնվել են նրանք հետզհետե, աստիճանաբար։ Սկզբում յերևացել են



Ահագին ծովային իխտիոզավր խլեզը՝ կեսի մեծությամբ

շատ պարզ կազմվածք ունեցողները, նման մեր ճիճուներին, վորդերին, միջատներին, և դեռ ավելի պարզ կազմվածքով։ Միլիոնավոր տարիներ անց՝ հայտնվել են ձկները, ավելի ուշ՝ մողեսները՝ ահռելի մեծությամբ, հետո թռչունները, և արդեն հետո՝ բարդ կազմվածք ունեցող կենդանիները։

Եվ կենդանիներից շատ շատերը, վորոնք ապրել են միլիոնավոր տարիներ մեզանից առաջ, մեռել, վոչնչացել են։ Որինակ, ահագին, հսկա կետ ձկան մեծության մողեսները, թռչող մողեսները, նախատիպ ատամնավոր թռչունները, կիսախլեզ, կիսագազան ահռելի մամոնտները, շատ յերկար ժանիք, յերկար բաշ ունեցող թավամազ փղերը և ուրիշ շատ կենդանիներ։

Եվ բոլոր կենդանիներն առաջացել են մեկը մյուսից, բայց շատ դանդաղ փոփոխության յենթարկվելով իրենց մարմնի կազմվածքը, իրենց մարմնի մասերը։

Եվ փոփոխությունն ինչից ե առաջացել, ինչն ե յեղել պատճառը։ — Եվ կենդանիների կյանքի, գոյության, ապրուստի պայմանները հետզհետե, աստիճանաբար փոխվել են և նրանք իրենց գոյությունը պահելու համար հարմարվել են պայմաններին։ Յեվ յեթե դուք լավ դիտեք այդ կենդանիների նկարները, կտեսնեք, վոր նրանց կազմվածքում ընդհանուր բան կա։

Են անդրջրհեղեղյան հսկա, ահագին ձկնամողեսը. ձկնախլեզը (նկար 1) ձկան լողակներ ունի, բայց վերջավորությունները՝ վոտները խլեզի թաթեր են։ Թռչող խլեզի կազմվածքից (նկար 2) յերևում ե, վոր մողեսը շատ անցողական բան ունի դեպի թռչունը։

Նախատիպ թռչունը ատամներ ե ունեցել, ինչպես մողեսը։ Բայց այժմյան թռչունն ատամ չունի։ Ատամնավոր թռչնի պոչը կազմվածքով նման ե մողեսի պոչին, այսինքն եվ պոչը կազմված ե շատ վոսկորներից, այն ինչ հիմա, մեր ժամանակի թռչնի պոչը միայն մի վոսկոր ունի։ Ինչպես ատամնավոր թռչունների, ենպես ել թռչող մողեսների թևերի վրա յեղել են վոսկորե մատներ։ Այժմյան թռչուններն եվ բանը չունեն։

Յեղել են և կենդանիներ, վորոնք գազան ասես՝ գազան չեն յեղել, թռչուն ասես՝ թռչուն չեն յեղել։ Ծածկված են յեղել մազով՝ գազանների պես, ատամների և վոսկորների կողմից ել գազանի պես են յեղել, բայց գլխից, արտաքին ձևով



Թռչող խլեզ

նմանվել են մողեսներին։ Մեր գազանները, շատ ուշ, հենց եվ կենդանիներից են սերվել, վորոնց նախահայրերն յեղել են մի ժամանակ ապրած և անհետ կորած ահռելի մեծության մողեսները։

Են որվանից, ինչ յերկիրը գոյություն ունի — և եդ գոյությունն ել շատ միլիոն տարիներ են հաշվում՝ կենդանական աշխարհը զարգանում ե, զարգանալով ել՝ փոփոխվում ե։ Մեռնում են կենդանիների մի քանի տեսակները և նրանց փոխարեն առաջ են գալիս նոր տեսակները՝ և՛ նման առաջիններին և՛ տարբեր առաջիններից։ Հետո՝ մի կողմից մեռնում են և դրանք, մյուս կողմից ել տեսակն ե փոխվում։ Յեվ եդպես միշտ,

անընդհատ և շատ դանդաղ, առանձին անհատների համար աննկատելի կերպով գնում է եդ փոփոխությունը կենդանական աշխարհում — կենդանիների մեջ։

Հենց եդ ձևով են սերվել, առաջացել են զանազան տեսակ են բազմաթիվ կենդանիները, վորոնք հիմա ապրում են յերկրի վրա։

Մեր ասածը լավ պատկերացնելու համար համեմատենք կենդանական աշխարհը ծառի հետ։ Ինչպես վոր ծառն ունի մի ընդհանուր բուն՝ բոլոր մանր ու խոշոր ճյուղերի համար, ենպես էլ կենդանական աշխարհն ունի մի սկիզբ, մի ընդհանուր բուն, վորից սերվել են, ծագել — առաջացել են ժամանակի ընթացքում բազմատեսակ և բազմաթիվ կենդանիները։



Տերամորֆի կմախքը. կիսախլեզ—կիսագազան

Ուրեմն եսպես։ Հաստատված է, վոր ամբողջ կենդանական աշխարհը ծագել է վոչ թե միանգամից, այլ ծագել է չափազանց դանդաղ, անցնելով մի տեսակ կենդանիներից դեպի մյուս տեսակը. կենդանական աշխարհի եդ տեսակ հետզհետե, աստիճանաբար զարգացումը գիտության լեզվով կոչվում է եվոլյուցիա։ Մարդն էլ կենդանի յե. մարդն էլ յենթարկվում է զարգացման, եվոլյուցիայի։

## ՄԱՐԴՈՒ ԾԱԳՈՒՄԸ

Մարդն էլ ծագել է ենպես, ինչպես բոլոր կենդանիները. աստիճանաբար զարգանալով. յերբ արդեն գոյություն է ունեցել հարուստ կենդանական աշխարհը։ Յերկար ժամանակ մարդը դեռ չի յեղել։ Թեև մարդն առաջացել է գազաններից շատ ուշ, բայց էլի մարդու ծագումը շատ հին է։ Մարդը գոյություն ունի յերկրի վրա շատ տասնյակ հազար տարիներից ի վեր։

Մարդու նախահոր գոյության մասին իմացան համեմատաբար վոչ ենքան էլ շուտ, են էլ իմացան գտնված վոսկորներից։ Գլխի վոսկորները նման են և կապիկի և մարդու գլխի վոսկորներին. կապիկի գլխի համար եդ վոսկորները շատ մեծ են, իսկ մարդու գլխի համար՝ շատ փոքր։ Ուրեմն են գլխում տեղավորված ուղեղը կապիկի ուղեղից մեծ պիտի լիներ և մարդու ուղեղից փոքր։ Գտնված վոսկորները մեզ ասում են, վոր եդ կենդանին ման էր գալիս յերկու վոտի վրա։ Եդ կենդանին կարող էր և մանգալ և վազել, այն ինչ կապիկներ 2 վոտով չեն կարող ման գալ, մինչև վոր չհենվեն ձեռների վրա։ Եդտեղ մենք տեսնում ենք դարձյալ մի անցողական էակ՝ մարդու և կապիկի մեջ։ Կարելի յե հենց եդ կապիկ-մարդը յեղել է մարդու նախահայրը և հենց եդ կապիկ—մարդուց է ծագել, սերվել զարգացել իսկական մարդը։

Եդտեղ ուսումնականների գիրքը հողի շերտերն են, վորոնք մեզ հայտնեցին յերկրի վրա ապրած և ապրող կենդանիների, եակների աստիճանական զարգացումը. բայց եդ գիրքը մինչև վերջը չի կարդացված, վերջնականապես դեռ չի ուսումնասիրված, ուսումնականների համար դեռ շատ բան մութն է, վերջնական խոսքը նրանք դեռ չեն ասել։ Եդ գրքի ցուցմունքներով ուսումնականները նորանոր պեղումներ են կատարում, փորում են յերկիրը, նոր վոսկորներ են գտնում և ինարկե, հետզհետե, ժամանակի ընթացքում, մենք կիմանանք իսկականը, թե ով է յեղել մարդու մերձավոր մոտիկ նախահայրը։ Թեև գիտությունը մարդուն դասում է կենդանիների շարքը, բայց մեծ տարբերություն կա եդ յերկուսի՝ մարդու և կենդանու մեջ։ Մարդը վոր կա՝ բնության պսակն է։ Մարդը բարձր



Սրանք կապիկներից ամենամեծերն են, վորոնք նման են մարդուն։ Ձախ կողմը՝ վերևից, նկարված է Գորիլլան, աջ կողմը, վերևից՝ Գիբբոնը։ Ձախ կողմը, ներքևից՝ Շիմպանզեն։ Աջ կողմը, ներքևից՝ Որանգուտանգը

է յերկրի բոլոր եակներից, նրա հետ չենք կարող համեմատել վոչ մի կենդանու։ Շատ պարզ է, վոր են պայմանները, վորոնց մեջ ապրել են մարդու մերձավոր նախահայրերը և իսկական մարդը՝ իրենց կյանքի լուսադեմին, և են գոյության կռիվը, վոր նրանք պիտի մղեյին բնության բազմաթիվ իրենց թշնամի կենդանիների դեմ, ստիպեցին, վոր մարդու խելքը զարգանա։

Մարդու խելքը բարձրացրեց մարդուն բոլոր կենդանիներից։

# ՎՈՂՋՈՒՅՆ ԱՆԳԼԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ. ԹՈՂ ՆՐԱՆՑԻՑ ՄԵԾԱՆԱՆ ԽՈՇՈՐ, ՎԱԽ ՉԻՄԱՑՈՂ ՄԱՐՏԻԿՆԵՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԳՈՐԾԻ ՀԱՄԱՐ

Ա. Ի. ՌՈՒԿՈՎ

## ՄԵՐ ՀՅՈՒՐԵՐԸ





ԱՆԳԼԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Ձախից՝ ընկ. ՆԵՆՍԻ ԽՈԼԼԸ— պատգամավորության նախագահ (14 տարեկան)

## ԱՆԳԼԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԸ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Հուլիսի 27-ին, խորհրդային շոգենավ «Յուշարը» Լենինգրադ հասցրեց անգլիական պիոներների պատգամավորներին:*

*«Պնդաճակատների» կառավարությունն անցագիր չեր տվել նրանց՝ ԽՍՀՄ գալու համար: Անգլիայի կապիտալիստներն ամեն կերպ աշխատում են, վոր իրենց բանվորները և նրանց յերեխաները չիմանան ճշմարտությունը՝ բանվորական առաջին պետության— Խորհրդային Միության մասին: Դրա համար նրանք թույլ չտվեցին անգլիական պիոներներին գալ մեր յերկիրը՝ իրենց սեփական աչքերով տեսնելու մեր կյանքն ու աշխատանքը:*

*Բայց ենքան էլ հեշտ չե՝ պիոներներին իրենց վորոշումից յետ կանգնեցնելը: Այդ նույնիսկ չկարողացավ անել Անգլիայի «պնդաճակատ» կապիտալիստների կառավարությունը: Պիոներների պատգամավորությունն առանց անցագրի թողեց Անգլիան և խորհրդային շոգենավով յեկավ ԽՍՀՄ:*

*Պատգամավորների գալուստը ցույց է տալիս, թե ինչքան ուժեղ ե ԽՍՀՄ և ամբողջ աշխարհի պրոլետարական յերեխաների ինտերնացիոնալ կապը:*

*Բանվորների, գյուղացիների և նրանց պիոներների ինտերնացիոնալ միությունը գրավական ե նրա, վոր կապիտալիստները չեն համարձակվի հարձակվել մեզ վրա: Ճիշտ են գրում պատգամավորներն իրենց դիմումի մեջ՝ ուղղված Անգլիայի յերեխաներին, վոր*

**«Պատգամավորությունը կոչ ե անում Անգլիայի բանվոր յեվ գյուղացի յերեխաներին՝ շարունակել պայքարը, կառավարության կողմից տարվող հակախորհրդային ագիտացիայի յեվ պատերազմական պատրաստությունների դեմ»:**

*Այսօր, անգլիական բուրժուական լրագրերն ինչեր ասես վոր չեն գրում ԽՍՀՄ-ում կատարվող սարսափների մասին, յերեխաների դժոխային կյանքի պայմանների մասին և այլն:*

*Սակայն, անգլիական պիոներների պատգամավորությունը շատ լավ է ուսումնասիրում մեր կյանքը, մեր յերկրի բանվորների և գյուղացիների սոցիալիստական շինարարությունը, վորպեսզի, յերբ վերադառնա, պատմի ճշմարտությունը ԽՍՀՄ-ի մասին:*

*Նրանք այդ էլ ասել են.*

**— Կվերադառնանք բուրժուական Անգլիա, կպատմենք բոլոր յերեխաներին յեվ բանվորներին, թե ինչպես ծաղկում ե կյանքը խորհուրդների աշխարհում: Մենք անընդհատ կաշխատենք բանվոր յերեխաների մեջ, ռուսական պիոներների աշխատանքի փորձը կը տեղափոխենք մեր կազմակերպություններում:**

*Մենք համոզված ենք, վոր նրանք կկատարեն իրենց խոստումը:*

*Կեցցեն անգլիական պիոներները և պրոլետարական յերեխաների խիզախ պատգամավորները:*

*Կեցցե ամբողջ աշխարհի պիոներների յեղբայրական միությունը:*

# ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՅԵՐԵԽԱՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ ԻՄ ՎՈՂՋՈՒՅՆՆ ԵՄ ՈՒՂԱՐԿՈՒՄ ՆՈՐ, ԱՊԱԳԱՅԻ ԱՆԳԼԻԱՅԻՆ, ՎՈՐՏԵՂ ԿՏԻՐԱՊԵՏԻ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԸ

Ա. Ի. ՌԻԿՈՎ

## ԹԵ ՎՈՆՑ ԳՆԱՑԻՆՔ ԸՆԿ. ՌԻԿՈՎԻ ՄՈՏ

*Մեր պատգամավորությունը, լինելով Մոսկվայի խորհրդի հանգստի տանը, իմացավ, վոր «Խորհրդային Միության Նախագահ» ընկեր Ռիկովը հանգստանում է ամառանոցում, հանգստյան տներից վոչ հեռու։*

*Մենք իսկույն և յեթ վորոշեցինք հյուր գնալ նրա մոտ։*



Ընկ. Ռիկով

*Անտառի միջով անցնելու ժամանակ, մեզ թվում եր, թե կը հասնենք մի մեծ պալատի, վորտեղ ապրում է Խորհրդային կառավարության պարագլուխը։ Բայց մենք շատ զարմացանք, յերբ տեսանք մի փոքրիկ տնակ, վորտեղ ապրում է այդպիսի մեծ մարդը։ Յեվ ճշմարիտ եր Կլիֆֆորդ Ռոբերտսը (պատգամավորության անդամ), յերբ նա նկատեց՝ վոր «ամբողջ տունը Բոլդվինի գարաժիցել փոքր է»։*

*Հետո մենք սկսեցինք դիտել ընկ. Ռիկովի «կալվածքը», վորը բաղկացած եր մի փոքրիկ բանջարանոցից, վորտեղ աշխատում է հենց ինքը՝ ընկ Ռիկովը։ Բանջարանոցում մեզ ուղեկցում եր ընկ. Ռիկովի կինը։ Մեզ մոտեցավ ընկեր Ռիկովը, վորը շատ զուրեկան մարդ դուրս յեկավ։ Ընկ. Ռիկովը բարևեց պատգամավորու-*



Անապատելի չեր լորդերի համար

*թյան բոլոր անդամներին և հյուրասիրեց մեզ մուրաբայով, վորը շատ համեղն եր*

*Յերբ նկատեցինք ընկ. Ռիկովի գոտկից կախված փոքրիկ ֆիննական դանակը, մենք նրան հանաքով ասացինք, վոր նա նման է այն բոլշևիկներին, վորոնց մասին գրում են բուրժուական թերթերը, վորովհետև նա թե մորուք ունի և թե դանակ։ Այս բարձր ծիծաղ առաջացրեց։*

*Ընկ. Ռիկովը հարցրեց, թե ինչո՞ւ մեզ հետ չի Նենսի Խոլլը։ յերբ նրան պատասխանեցինք, թե նա հիվանդ է, նա իսկույն և յեթ կտրեց նրա համար ծաղիկների մի մեծ փունջ, վորը մենք հետո Նենսիին հանձնեցինք։*

*Հեռանալով ընկ. Ռիկովից մենք մտածում եյինք, խոմ չե՞ վոր Բոլդվինն ու Չեմբերլենը մեզ չեն թողնում նույնիսկ իրենց պալատներին մոտենալ։*

**ՋԵՄՍ ՄԻԼԼԵՐ** — *Ֆայֆի շրջանի ածխահատների պատգամավոր (12 տարեկան)*

# ԸՆԿ. ԲՈՒԽԱՐԻՆՆ ԱՆԳԼԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

*Սիրելի և անմոռանալի պատանի ընկերներ.*

*Ուղարկում եմ ձեզ բոլորից ջերմ ողջույններ։ Ձեր պատգամավոր պիոներները, վորոնք բերեցին Մակ-Մանուսի աճյունը, լավ են արել, վոր քանդելով արգելքը յեկան մեզ մոտ։ Բրիտանական հզոր կայսրության կառավարությունը, վորը փորձում եր «թույլ չտալ» բանվոր դասակարգի յերեխաներին ՍՍՀՄ գալ չի կարող հաղթել այդ յերեխաներին — մեր բարեկամներին։ Մենք հույս ունենք, վոր շուտով այդ յերեխաները կմեծանան և կօգնեն իրենց հայրերին ու մայրերին տապալելու կապիտալիստ, ահագործողների լուծը։ Յեղեք առողջ աշխույժ, հերոսաբար կըռվեցեք ամբողջ աշխարհի բանվորների գործի համար։*

Lonb live the world revolation։*)

**) Ընկ. Մակ-Մանուսը Անգլիայի Կոմկուսի ղեկավարներից եր, վորը վերջերս վախճանվեց։ Նրա աճյունը, իր ցանկության համաձայն տեղափոխվեց Մոսկվա՝ թաղելու համար։*

***) Անգլիերեն է —Կեցցե համաշխարհային հեղափոխությունը։*

**Ն. Բուխարին**

# ՉԵԽԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԸ

*Յերբ յես արտասահման եյի մեկնում, ծանոթ պիոներներն ինձ հրահանգ տվեցին.*

*— Գնում ես, գնա, ընկեր Մայակովսկի, բայց յերբ վերադարձար, մեզ պիտի պատմես այնտեղի պիոներների մասին։*

*Ամենից առաջ յես գնացի Չեխո-Սլովակիա։ Հասա այդ յերկրի մայրաքաղաքը՝ Պրագա։ Անմիջապես ընկերներին հարցնում եմ,—ցույց տվեք, թե վորտեղ են ձեր պիոներները։*

*Ընկերները պատասխանում են.*

*— Նրանց փնտռելու կարիք չկա, նրանք յերեկոյան կգան քո դասախոսությանը։*

*Յերեկոյան, ժողովրդական տանը յես կարդացի մի դասախոսություն և արտասանեցի իմ գրած բանաստեղծությունները։ Շատ ժողովուրդ եր հավաքվել, հազարից ավելի։ Հանդիսականների մեջ կային նաև պիոներական հասակ ունեցող շատ պատանիներ։*

*Արտասանում եմ բանաստեղծությունները և դահլիճն եմ դիտում։ Յերեխաներ շատ կան, բայց պիոներներ չկան։ Վոչ մի կարմիր փողկապ։ Դասախոսությունից հետո մոտենում է ինձ մի ընկեր՝ յերկու պատանիների հետ։ Յես նրան հարցնում եմ.*

*— Վորտեղ են ձեր պիոներները։ Յերկու պատանիները միասին պատասխանեցին.*

*— Մենք վոր կանք, պիոներներ ենք...*

*— Իսկ փողկապներդ վորտեղ են։*

*Նրանցից մեկը ձեռքը տարավ գրպանը և հանեց կոլոլված կարմիր փողկապը։*

*— Ահա։ Այդ մենք տանն ենք կրում։ Հենց վոր տանից դուրս ենք գալիս — գրպանի մեջ ենք խոթում։ Մեկ անգամ յեղբորս հետ գնացի բանվորական թատրոն։ Յեղբայրս մասնակցում է «Կապույտ բաճկոնին»։ Բեմադրում եյին «Կրամարժի լայը» պիեսան։ Կրամարժն առաջ ռուսական բուրժույ է յեղել։ Բոլշևիկները խլել են նրանից Ղրիմում գտնվող ամառանոցները և բանվորների համար հանգստյան տներ ու սանատորիաներ են բաց արել։ Կրամարժը թողնում է Ռուսաստանը և գալիս է Պրագա, կազմակերպում է իր նմաններից փաշիստների կուսակցություն, սկսում է ամենաթունդ հայհոյանքներով հայհոյել խորհուրդների իշխանությանը, ագիտացիա յե մղում, վոր բոլշևիկներին չճանաչեն, իսկ յերեկոները, կնոջ հետ միասին, վողբում են իրենց կորցրած ամառանոցները։*

*Մեր կոմյերիտական կապույտ—բաճկոնավորները նրան եր, վոր ծաղրում եյին։ Բոլորը հռհռում են, բացի լրտեսներից։ Վերադառնում ենք ներկայացումից։ Յես փողկապով եմ, յեղբայրս կապույտ բաճկոնով։ Հանկարծ, վորտեղից վոր է, վոստիկանը.*

*— Համեցեք վոստիկանատուն—ասում է նա։*

*Վոստիկանատանը մեկը, ինչ վոր միրուքավոր, հարցնում է.*

*— Ինչ մարդիկ եք, եդ ինչ փորմա յեք հագել։*

*Իսկ մենք նրան պատասխանում ենք.*

*— Մենք կոմունիստներ ենք, այստեղ ազատ յերկիր է։ Մեր քեֆը չի, ինչ ուզենք, են էլ կհագնենք։*

*Միրուքավորը կատաղեց.*

*— Կոմունիզմով կարող եք ձեր տանն զբաղվել, իսկ դրսում մենք ենք իշխանները։ Հանեցեք փորմաները։*

*Մենք ուզում եյինք առարկել, բայց յերեք վոստիկան հարձակվեցին մեզ վրա, ինձնից փողկապը հանեցին, յեղբորից՝ կապույտ բաճկոնը։ Յեվ այդպես մենք տուն գնացինք։ Ինձ համար դեռ վոչինչ, յեղբայրս, միայն շապիկով, ամբողջ քաղաքի միջով յերկու վերստ ճանապարհ կտրեց։*

*— Յեթե Մոսկվա գաք,—ասում եմ յես,—շատ ազատ կզգաք։*

*Բայց նրանք առարկեցին.*

*— Մոսկվայի մասին մենք գիտենք, մենք պիտի աշխատենք Պրագայումն էլ խորհուրդների աշխարհի ազատությունը ձեռք բերել։ Մեր յերկիրը ձեր յերկրից 10 անգամ փոքր է, իսկ մենք արդեն 2000 պիոներ ունենք։ Իսկ Կարմիր Սպորտինտերնի սեկցիայում 30000 պատանիներ են կազմակերպված։ Մենք նրանց մեջ աշխատանք ենք տանում։ Ով հասկանում է՝ թե ինչ բան է պիոները, նա անցնում է մեր շարքերը։*

*Մեզանից շատերը կոմունիստներ կդառնան։*

*Պրագայից դուրս գալիս, նրանք ինձ խնդրեցին խորհրդային պիոներներին վողջունել և նվիրեցին իրենց հանդեսը* «Kohoutek» — *«Աքաղաղ» անունով։*

**Վլ. Մայակովսկի***)

**) Մայակովսկին ժամանակակից ռուս խոշորագույն բանաստեղծներից է։*



Ծաղկաձորի պիոներական լագերը

## ԻՆՉՊԵՍ Է ԱՆՑ ԿԵՆՈՒՄ ՕՐԸ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼԱԳԵՐՈՒՄ

Բաց դաշտում, չորս կողմից լեռներով շրջապատված, փռված են պիոներական վրանները։

Առավոտ է։ Զով քամին մեղմ շշնջյունով շոյելով վրանները՝ անցնում է, կորչում լեռներում։ Բոլորը քնած են հանգիստ։ Ժամը $6^1/_2$-ն է։ Սիգնալը կոչ է անում բոլորին հագնվել ու դուրս գալ մարզանքի։ Մի քանի րոպեյում բոլորն արդեն շարքումն են, վրաններում՝ բացի պահակներից՝ վոչ վոք չի մնացել։

Մարզանքից հետո, ուռաների տակ, բարձրացնում են դրոշակը։ Այնուհետև թեյում են և մի կես ժամ հանգստանալուց հետո՝ սկսում են զանազան ֆիզիքական աշխատանքներով զբաղվել մինչև նախաճաշը։ Դրանից հետո հանգստանում են մինչև ճաշը։ Այդ ժամանակամիջոցում պիոներներն զբաղվում են ընթերցանությամբ և զանազան խաղերով։

Ճաշից հետո սկսվում է մեռյալ ժամը— այդ ժամին բոլորը պետք է քնած լինեն մինչև ժ. $4^1/_2$-ը։ Մեռյալ ժամից հետո սկսվում են լողը, խաղերը և հասարակական աշխատանքները։ Այդ տևում է մինչև ժամը 6-ը։ Շուտով վառվում են խարույկները, վորոնց շուրջը հավաքվում են բոլոր պիոներները։ Այդ ժամն ամենահետաքրքիրն է մեզ մոտ։ Սկսվում է զրույցը, վորը երգերով տևում է մինչև ժամի 9-ը։ Դրանից հետո, «Ինտերնացիոնալի» նվագի տակ, իջեցնում ենք դրոշակը։ Սիգնալը կոչ է անում քնելու։ Դարձյալ հրապարակում մնում են միայն պահակները։

Լագերը խոր քնով քնած է։

Վ. Բ.

Ծաղկաձոր

## ԵՋՄԻԱԾՆԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼԱԳԵՐՈՒՄ

Վերջապես Եջմիածնի պիոներական կազմակերպությունը նույնպես հաջողվեց լագեր դուրս գալ։ Եջմիածնի պիոներական կազմակերպության համար լագեր դուրս գալը, աշխատանքի դեռ նոր ասպարեզ լինելով, անշուշտ կունենար իր բացերը։ Հենց օրինակ այն հանգամանքը, վոր ծնողները դժվարությամբ եյին համաձայնում իրենց երեխաներին լագեր դուրս բերելու մտքի հետ։ Չնայած դժվարություններին՝ մենք հասանք մեր նպատակին։ Հուլիսի 13-ին մենք արդեն ճանապարհ ընկանք դեպի լագեր։ Լագերը գտնվում է Բաշ-Աբարանում, վորտեղ հով է, ոդը մաքուր, ջուրն առողջարար։

Լագեր են դուրս յեկել մոտ 100 պիոներ. նրանք բաժանված են չորս կոլլեկտիվի։ Լագերում առանձին վրաններ չենք խփել։ Պիոներներին հատկացված է մի շենք, վորտեղ նրանք բնակվում են։ Լագերի խորհրդի վորոշմամբ յուրաքանչյուր կոլլեկտիվ կցված է մոտակա գյուղերից մեկի պիոներական կոլլեկտիվին՝ նրա աշխատանքներին ոժանդակելու և կապ պահպանելու համար։ Մենք աշխատում ենք գյուղի անկազմակերպ պատանիների մեջ, նրանց մասնակից ենք դարձնում մեր աշխատանքներին ու խաղերին։ Բացի դրանից, ոգնում ենք գյուղացիներին, մասնակցելով նրանց բանջարանոցների աշխատանքներին։

Հ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

**ԼԱԳԵՐՈՒՄԸ ԿՅԱՆՔ ԿԱ,**
**ԳՅՈՒՂԻ—ՔԱՂԱՔԻ ԿԱՊ ԿԱ**

## ԾԱՂԿԱՁՈՐԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼԱԳԵՐԸ



Լսում են ռադիոն



Բացօդյա խաղարան

# ՄԵՐ ԼԱԳԵՐԸ

*(Տպավորություններ Ամերիկյան լագերից)*

### ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

...Արեգակը բարձր զենիթից կրակ է թափում։

Սար ու ձոր, դաշտ ու դուրան ծածկված կանաչով՝ տապ շողից շլնգշլնգում են... Թռչունները, ուրախ ծլվլյունով և ուրախ երգով, թևերն են տալիս ու դեպի ջինջ, կապուտակ յեթերը սլանում...

Կեսօր է...

Մեր շարքերը, կազմ ու պատրաստ, ճանապարհ են ընկնում։

Բոլորը, վազքերի ջլոտ մկաններով, դոփում են գետինը։

Ճանապարհն անցնում է կանաչազարդ արտերով և բլրակներով։

Սավետական կարմիր արևը փայլում է յերկնքից...

Ահա «Լագաներ» կոչված վայրը։ Ահա քարահանքը։ Ահա «Յոթ աղբյուրներ»-ը։ Ահա «Ոգևնի գոլը» և ահա՝ վերջապես՝ Լ Ա Գ Ե Ր Ը...

### ԼԱԳԵՐՈՒՄ

Մեր լագերը բաղկացած է շարք-շարք, իրար կողք կողքի շարված 46 վրաններից..

Լագերն ընկած է Ախուրյանի (Արփաչայ) աբեղյան գեղածիծաղ ափին, մի գեղեցիկ, կանաչներով ծածկված տափարակի վրա։

Յերբ մտնեցանք լագերին, մեզ դիմավորեցին ալևոկի ազանները՝ մեր ընկերները, ծիծաղը դեմքերին և ուրախ...

Մենք բաժանվել ենք վրանների վրա և յուրաքանչյուրս, մեր ապրյաներով, տեղ ենք գտել մեզ համար վրանի մի անկյունում...

Գիշերը տարածել է իր սև թևերը և պրկել է բոլորին...

### ԱՇԽԱՏԱՆՔԻ ՕՐ

Առավոտ է...

Արեգակը նոր է փռկեցրել Արարատ լեռան լանջերը և իր լուսավոր ճաճանչները փռել է հեռու...հեռու...

Յերկինքը պարզ է ու կապուտակ...

Օդը հանգիստ է ու խաղաղ...

Ջրի յերեսին յերերում է վաղորդյան թեթև մշուշը...

Ծիծեռնակը, նետի արագությամբ, սլանում է ջրի յերեսով...

Կենդանական աշխարհը յեռ ու զեռի մեջ է...

Հեռու հեռվից լսվում է հովվի սրնգի կլկլոցը...

Լագերը դեռ քնած է մուշ-մուշ...

Ահա այս պահուն բնից վեր է կենում մեր սիգնալիստ Հ. Բուլթյանը և իր սիգնալով զարթեցնում բոլորին։

Նրա սիգնալի հնչյունները տարածվում են բլուրների վրա և ձորերում ու արձագանքում հեռուների վրա յերկար-յերկար..., միախառնվելով բնության յերգերին, կազմում մի հրաշալի համերգ...

Տղաները զարթնում են, արագ հավաքում են իրենց տեղերը և սրբիչները ձեռներին, շտապում են դեպի ջուրը։ Լվացվում են և արևի առաջին

ճառագայթների տակ, ֆիզկուլտուրայով պարապում։

Արեգակը լուսաճառագայթներով լցրել է բնությունը կենդանի աշխուժով։։

Տղաները մերկ՝ շարք-շարք պառկել են լերկ քարաժայռերի վրա և տաքացնում են իրենց մարմինը...

Մի քանիսը հավաքվել են մայրի ստվերում և կարդում են «ԱՎԱՆԳԱՐԴ»-ում անգլիական պիոներների, չինական հեղափոխության, ԴՈՐԻՈ-ի և ՍԵՄԱՐ-ի մասին...

Մի ուրիշ տեղ կարդում են «ՊԻՈՆԵՐ»-ը և լերգում...

Կեսօր է...

Շտապում ենք ճաշի...

Ճաշը համեղ է...

Լ Ո Բ Ի...

Վարպետը լավ է եփել...

Ա Լ Ն Ի...

Ճաշից հետո հանգիստ՝ վրաններում։

—Թեյ...

—Գիրք...

—Լուրեր...

Ջեմբերլեն...

ԶԱԳԵՍ...

ԿԱԼԻՆԻՆ...

ԼՈՒԿԱՇԻՆ...

ՅԵՐԿՐԱՇԱՐԺ...,

ՁԻՆ ՅՈՒ ՍՅԱՆ...

ՉԱՆ ԿԱՅ ՇԻ...

ՅԵՐԵԿՈՅԱՆ

...Յերեկո յե...

Միսս Մեյզի ավտոն փառում է՝ գետափին կանգնած։

Միսս Մեյզը խոսում է լերկար-լերկար... Տղաները լուռ լսում են և Սիմոնը բերանաբաց...

Ավտոն թռավ!!!

Միսս Մեյզը ձեռն օդում շարժելով, ասաց։ —«Ց Տ Ե Ս Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն»...

Վրաններն սուզվում են։

Ջուրն չփփում է անընդհատ...

Տղաները մտել են վրանները... խոսում են դեսից-դենից։

Մեծ ընկերը պատմել եր նրանց՝ աշխարհի մեծ մարդկանց, չինական հեղափոխության, պիոներական կազմակերպության, արևի խավարման մասին...

Բոլորը խոսում են օրվա դեպքերի—Զագեսի բացման, Կալինինի գալու և Բուխարինի նամակի մասին...

...Ու հանկարծ, այս քաղցր պահին սիգնալի քաղցր ձայնը գրնգաց...

Քարացել է լագերը...

Կամաց անձրև է տեղում։

Անտառը լուռ թշշում է։

Լագերը մուշ-մուշ ննջում է...

...Յերազում Սիմոնը տեսնում է Զագեսը։ Կալինին։ Միսս Մեյզ։ Արփաչայ։ Կարմիր բանակային։ Արևի խավարում։ Կեսօր։ Լ ո բ...

...Յերեկո յե... Ավտոն թռավ. «Ցտեսություն։

—«Ց Տ Ե Ս Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն»...

Սիմոնը մտել է քաղցր քուն...

ԱՐՇԱԿՈՒՆԻ

---

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**«ՊԻՈՆԵՐ ՄՅՈՒԼԼԵՐԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ»**, Յերևան, Պետհրատ. 1927 թ. եջ՝ 45, գինը 15 կոպեկ։

Կարդալով այս գրքույկը, ամեն մի պիոներ գաղափար կը կազմի, թե ինչպես են ապրում ու պայքարում արտասահմանի իր պիոներ ընկերները՝ կապիտալիստական բռնակալ կարգերում։ Նա կը ծանոթանա արտասահմանում գտնվող իր ընկերների մի մասի պայքարի խորամանկ միջոցների, նրանց անվախ ու հանդուգն բնավորության յեվ նրանց ներքին աշխատանքների ու կարգապահության հետ։

«Պիոներ Մյուլլերի նամակները», կարդացող ամեն մի պիոների համար դաստիարակչական խոշոր նշանակություն կունենա. այդ գիրքը կումեղացնի պիոների դասակարգային գիտակցությունը, հեղափոխական ոգի ու յեռանդ կտա նրան յեվ ավելի յեվս կումեղացնի այն հակակրանքը, վոր ամեն մի պիոներ տածում է դեպի կապիտալիստական բռնակալ կարգերն ու նրա գլուխն անցած բուրժուաները։

Պետք է ամեն մի պիոներ կարդա յեվ լավ կարդա այս գրքույկը, աշխատի օրինակ վերցնել գրքույկում նկարագրված այնտեղի պիոներների անձնվիրությունից, հեղափոխական խիզախությունից ու համարձակությունից, վորպեսզի ինքն էլ՝ պետք յեղած ժամանակ՝ հանդես գա այնպես բաց ու համարձակ, ինչպես արտասահմանի իր ընկերները։

Յուրաքանչյուր պիոներ կարող է գնել այդ գրքույկը, քանի վոր նրա գինը բավական եժան է։

# ԴԻԼԻՋԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԽՈՍՔԸ

## ԿՈՐՉԻ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ. ԿՈՐՉԻ ՉԵՄԲԵՐԼԵՆՆ ԻՐ ԱԿՆՈՑՈՎ

*Մենք, Դիլիջան քաղաքի պիոներներս, լսելով զրույց պատերազմի վտանգի և պաշտպանության խնդիրների մասին, խոսք ենք տալիս.—*

*1. Մեր առօրյա աշխատանքների ընթացքում չմոռանալ ռազմական գիտելիքներ սովորելու գործը։ Պիոներական ակումբում ստեղծել ռազմական անկյուն։ Կոլեկտիվներում և ողակներում անցկացնել հեղափոխական-ռազմական բնույթ կրող զրույցներ։ Կազմակերպել էքսկուրսիաներ, վորոնց ընթացքում ռազմական խաղեր անցկացնել ու վարժություններ կատարել։ Կիրառել պիոներական օրենքներն ու սովորությունները։ Կապ հաստատել Կարմիր Բանակի զորամասերի հետ։*

*2. Կատարել հանգանակություն «մեր պատասխանը Չեմբերլենին» ոդանավը կառուցելու ոգտին։*

*Մենք մեր յեղբայրական ողջույնն ենք ուղարկում միջազգային պիոներական բանակին և կոչ անում՝ բողոքել իմպերիալիստական պատերազմի դեմ յեվ պատրաստ լինել՝ հարկ յեղած դեպքում՝ ոգնելու կոմունիստական կուսակցությանը յեվ կոմսոմոլին պատրաստվող իմպերիալիստական պատերազմի դեմ մղվելիք պայքարում։*

*Կեցցե պիոներական միջազգային բանակը։*

*Կորչի իմպերիալիստական պատերազմը։*

*Կորչի Չեմբերլենն իր ակնոցով։*

*Կեցցե Համաշխարհային Հոկտեմբերը։*

## ԿՌԻՎ ԴՐՈՇԱԿԻ ՀԱՄԱՐ

*(Ռազմական խաղ)*

*ԽԱՂԱՑՈՂՆԵՐԻ ՔԱՆԱԿԸ.—Մեկ կոլեկտիվից մինչև 500 հոգի։*

*ՎԱՅՐԸ.—Խաղի համար այնպիսի վայր պետք ընտրել, վոր ծածկված լինի անտառով, թփուտներով, ժայռեր լինեն, դար ու փոս և այլն։ Տարածությունը ½ կիլոմետրից մինչև 2 կիլոմետր (նայած խաղացողների քանակին)։ Նախքան խաղն սկսելը, ճիշտ կերպով վորոշում են խաղի սահմանները և բոլոր մասնակցողները ծանոթանում են նրանց հետ։*

*ԽԱՂԻ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ.—3-ից 10-ը կարմիր դրոշակներ, ամրացված մեկ մետր բարձրություն ունեցող ձողերի վրա (կարելի յե դրոշակ պատրաստել վզկապներից) և մի հատ էլ փող։*

*Խաղացողները բաժանվում են 2 հավասար խմբերի։ Խմբերից մեկը վզկապները թևերին է կապում, մյուս խմբից զանազանվելու համար։*

*Դրանք հարձակվողներն են։*

*Հրապարակի մեջ տեղում, ծածուկ մի վայրում, դրվում է բերդը, վորը պահպանվում է մյուս խմբի կողմից։ Բերդի շուրջը խփում են 3-10 դրոշակ (նայած խաղացողների թվին)։ Բերդի շուրջը, մի քանի շղթաներ կազմելով, դասավորվում են բերդի պաշտպանները։*

*Նրանցից վոչ մեկն իրավունք չունի մոտենալ բերդին 50 քայլից ավելի։ Պաշտպանողները՝ անհրաժեշտ է՝ վորքան կարելի յե իրար մոտ լինեն։*

*Հարձակվողների խումբը մի կողմ է քաշվում խաղի վայրից։ Հետո նրանց ցույց է տրվում ուղղությունը (վոչ թե տեղը) բերդի։ Նրանց խնդիրն է հանդիսանում փախցնել բերդից դրոշակները և հասցնել իրենց բանակը։ Յուրաքանչյուր հարձակվող, վորը հասնում է բերդին, ամեն անգամ իրավունք ունի մեկ դրոշակ փախցնել։ Այն հարձակվողները, վորոնց կը խփեն պաշտպանվողները, համարվում են գերի և նրանց տեղավորում են բերդում, դրոշակների մոտ։ Հարձակվողները կարող են ազատել նաև գերիներին։ Նա, ով կհասնի բերդին՝ դրոշակը փախցնելուց բացի, կարող է ազատել մեկ գերու։*

*Յեթե հարձակվողը վերադարձին դրոշակը ձեռին կբռնվի, այդ դեպքում դրոշակը յետ են վերցնում և նա դառնում է գերի։*

*Խաղն ավարտված է համարվում, յեթե հարձակվողները վորոշ ժամանակամիջոցում կխլեն բոլոր դրոշակները։*

*Խաղը տևում է ժամ ու կես-յերկու ժամ։ Խաղն սկսում ու վերջացնում են փողի նշանի համաձայն։*

# ԽՍՀՄ ԼԱՎԱԳՈՒՅՆ ՆՇԱՆԱՁԻԳԸ ՊԻՈՆԵՐ Է



ԸՆԿ. ՍՄԻՐՆՍԿԻ

Պիոներ Գեորգի Սմիրնսկին Խորհրդային Միության լավագույն նշանաձիգն է։ Նա դուրս է յեկել յերկու անգամ մրցության։ Առաջին անգամ արձակել է 100 գնդակ, վորից 96-ը խփել է նշանին։ Յերկրորդ անգամ դարձյալ արձակել է 100 գնդակ այս անգամ 98-ն է խփել նշանին։

## ՎՈՐՏԵ՞Ղ Է ՀԱՐԱՎԸ

Էքսկուրսիայի ժամանակ ձեզ գուցե հարկավոր է վորոշել թե, վորն է հարավը, հյուսիսը և այլն։ Յեթե ձեռքի տակ կողմնացույց չկա, կարող եք օգտվել գրպանի սովորական ժամացույցով՝ կողմերը վորոշելու համար։ Միայն հարկավոր է գիտենալ, թե՝ ինչպես պիտի օգտվել ժամացույցից այդպիսի դեպքերում։ Դուք ժամացույցը



պահում եք այնպես, վոր ժամը ցույց տվող սլաքը նայի ուղղակի արևին։ Յերբ ժամացույցը կլինի այդ վիճակում, համասար կիսեցեք ժամը ցույց տվող սլաքի և 12-ի միջև յեղած անկյունը։ Յեվ այդ անկյունը կիսող գիծը ցույց կտա հարավը։

## ՓՈՐՁԵՑԵՔ ՁԵՐ ԱՉՔԻ ՉԱՓԸ

Իրար կողքի դարսեցեք յերեք դրամ, որինակ՝ տասը կոպեկանոցներ, ինչպես ցույց է տրված նկարի մեջ։




Հարկավոր է մեջտեղի դրամն այնքան իջեցնել, վոր նրա և վերևում մնացած յերկու դրամների տարածությունը համասար լինի C գծին, այսինքն, այն տարածությանը, վոր բռնում են յերեք դրամները՝ իրար կողքի շարած։ Յերբ այդ կատարեցիք, այն ժամանակ թուղթը վերցրեք և չափեցեք. վորքան ճիշտ եք արել։ Դուք կզարմանաք ձեր աչքի չափի վրա։ Անպայման մի սխալ արած կլինեք։ Յերկար վարժություն է պետք այդ ճիշտ կատարելու համար։



## ՊԱՏԿՈՐՆԵՐ!

«ՊԻՈՆԵՐ»-ի առաջիկա №-ը ամբողջովին նվիրելու յենք մեր ամառային աշխատանքների հաշվառմանը։

ԳՐԵՑԵՔ

այդ մասին թղթակցություններ։

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՄ ԱՆՑԿԱՑՆԵԼՈՒ ԱՄԱՌԸ ԳՅՈՒՂՈՒՄ

Քանի քանի անգամ ծրագիր եմ մշակել։ Յեթե բոլորը մտցնելու լինեմ՝ մի քսան թերթ բան դուրս կգա։

Յես գնում եմ մեկ-յերկու ամսով գյուղ։ Մնաս բարով, քաղաք։ Ամառային քո շոգից ու փոշուց հեռանում եմ, ինձ հարկավոր է հանգստանալ, առողջացնել մարմինս (վորոշել եմ 10 15 ֆունտ քաշս ավելացնել)։

Ինչքան հրաշալի յե։ Աչքերս փակում և տեսնում եմ գյուղն իր խրճիթներով, ծաղիկներով ծածկված դաշտերն ու մարգագետինները, սառն աղբյուրները, գետը, եվ վո՞րն ասեմ, եվ վո՞րը։

Ամեն որ ծրագիր եմ կազմում՝ «գյուղի ու քաղաքի կապն ամրացնելու» մասին։ Իմ հայրը մեկ անգամ նայեց իմ կազմած ծրագիրը և ասաց. —Ի՞նչ է, գնում ես քարոզելո՞ւ, թե՞ հանգստանալու։ Յես նրան պատասխանեցի.—Թե առաջինն եմ անելու և թե յերկրորդը։

Յես կարող եմ ծանոթացնել ձեզ իմ ծրագրին։ Ահա։ Մի քանի որ է, ինչ կոլեկտիվի պիոներներից գյուղ տանելու համար գրականություն եմ հավաքում։ Հետո հատկապես վերցնում եմ «Պիոներ» հանդեսի բոլոր համարները և մի քանի գյուղատնտեսական գրքեր։ Հիմա յես մի քանի յերգեր ու խաղեր եմ սովորում, վորպեսզի գյուղի ընկերներին սովորեցնեմ։ Առանց դրա, շատ վատ կլինի։ Որինակ ընկերներիցս մեկն անցյալ տարի ամառը գյուղումն եր անցկացրել։ Գյուղի պիոներներն են հույն են ունեցել, վոր ընկերս նրանց մի նոր բան կսովորեցնի, բայց նա մի յերգից ու մի խաղից բացի, ուրիշ վոչինչ չի գիտցել։

Այդ ընկերն այս տարի նույնպես գյուղ է գնալու. մենք պայմանավորվել ենք մեկ մեկու մեր աշխատանքի մասին գրել, կամ, ինչպես կոլեկտիվումն են ասում՝ «պիտի փոխանակենք փորձը»։ Բացի դրանից, մեր պատի լրագրի խմբկոլն ինձ հանձնարարել է գրել գյուղի կյանքի, գյուղական պիոներների կենցաղի մասին թղթակցություններ։ Մի խոսքով՝ ահագին գործ կա կատարելու։

Ինձ ծանոթ մի կոմյերիտական, վորն աշխատում է մեխանիկական գործարանում, ինձ խորհուրդ տվեց գյուղում «քիթս բարձր չպահել» և այլն։ «Կան այնպիսիններ, —ասաց նա—վորոնք գյուղ են գնում և բջջին կամ կոլեկտիվին ասում—յես քաղաքից եմ յեկել, պատմեցեք՝ թե ինչ եք դուք արել, վորից հետո հրահանգներ կտամ ձեր հետագա աշխատանքների համար»։

Իհարկե յես այդպես չեմ վարվելու։ Յես վերջապես գյուղում պիտի պահեմ իմ աշխատանքի ծրագիրը։ Յերբ աշնանը վերադառնամ քաղաք, կոլեկտիվում ինձ կասեն,—դե, զեկուցիր, տեսնենք ինչ ես արել։ Յես վոչինչ չեմ ասի և կտամ իմ ծրագիրը նայելու։ Թող կարդան և իմանան։

**Սիմոնյան**

---

# ԻՆՉՊԵ՞Ս ՊԻՏԻ ՎՈՐՈՇԵԼ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Յուրաքանչյուր պիոներ պիտի կարողանա մոտավորապես, աչքի չափով վորոշել առարկաների միջև յեղած տարածությունները, նրանց չափերը։ Սակայն դա մի անգամից չի հաջողվի։ Հարկավոր է յերկար վարժվել տարածությունները վորոշելու մեջ, ավել կամ պակաս ճիշտ միջոցով ստուգել սխալները, վորպեսզի հնարավոր լինի հաջող հետևանքների հասնել։

Պիոները պիտի սովորի միանգամից, աչքի չափով վորոշել, որ. տարածությունը մինչև անտառը, վորը տեսանելի յե յերկու վերստի վրա, գետի լայնությունը, փոսի խորությունը, տան կամ ժայռի բարձրությունը, յերկաթուղագծի տեսանելի կտորի յերկարությունը և այլն։

Տարածությունը վորոշելիս նկատի պիտի առնել հետևյալը.

**50 քայլի** վրա կարելի յե նշմարել աչքերը։

**100 քայլի** վրա աչքերը վորպես կետեր են յերևում։

**200 քայլի** վրա յերևում են կոճակները և կարելի յե վորոշել հագուստի զանազան մանրամասնությունները։

**300 քայլի** վրա տեսնում ես մարդու դեմքը։

**500 քայլի** վրա վորոշվում են հագուստի գունավոր մասերը։

**700 քայլի** վրա տեսանելի յեն վոտների շարժումները։

**2 վերստի** վրա տեսանելի յեն առանձին ծառերը։

**3 վերստի** վրա տեսանելի յե տների ծխնելույզները։

**6 վերստի** վրա տեսանելի յեն առանձին շինությունները։

**10—15 վերստի** վրա տեսանելի յեն մեծ յեկեղեցիների գմբեթները և բարձր շենքերը։



Գրառեպվար № 270 ր     Տիրաժ 1200     Պետհրատի 2-րդ տպարան Յերևանում պ. 732

ՀԱՄԱՐԸ 25 ԿՈՊԵԿ

# ԽԵԼԱՑԻ ԺԱՄԱՆՑ ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԵՐԻՆ

## ԳՆԴԱՍԵՂ

Այս նկարում 36 շրջանակներ դասավորված են քառակուսի ձևով. յուրաքանչյուր շարքում 6 շրջանակ կա։ Բացի դրանից, ձեզ տրվում է 6 գնդասեղ, վորը նույնպես ցույց ենք տվել նկարի մեջ։ Պահանջվում է ամրացնել այդ գնդասեղները 6 շրջանակների մեջ, ընտրելով նրանց այնպես, վոր ուղղահայաց զուգահեռ անկյունագծային շարքերում մեկ գնդասեղից ավել չլինի։



Ինչպիսի՞ շրջանակներ պիտի ընտրել։

## ԿԱՏԱԿ—ԽՆԴԻՐՆԵՐ

**1. Ինչպե՞ս ապացուցել լուցկիներով, վոր չորս ութից հանենք հինգ՝ վոչինչ չի մնա։**

**2. Քանի՞ տարի պիտի գործարանն աշխատի, վորպեսզի պատրաստի մեկ բիլիոն լուցկի, յերբ գործարանն օրական պատրաստում է մեկ միլիոն։ Մեկ տարին հավասար է 365 օրվա։**

**3. Չորս լուցկիները՝ չկոտրելով՝ դարձնել 10-ը։**

## ԶԱՐՄԱՆԱԼԻ ԺԱՊԱՎԵՆՆԵՐ

Թղթից մի յերկար ժապավեն կտրեցեք՝ 2-3 մատ լայնությամբ։ Ժապավենների ծայրերը կպցրեք վոչ ուղիղ ձևով, այլ այնպես, վոր 1-ին անկյունը գա 4-րդ անկյունի դիմաց, իսկ 2-րդը՝ 3 րդ անկյունի դիմաց (նայիր 1 և 2 նկարները)։ Հետո վերցրեք մկրատը և մեջ տեղից (յերկարությամբ) կտրեցեք թղթի ժապավենը։ Ի՞նչ եք կարծում, ինչ կստացվի։ Կարելի յե գրազ գալ, վոր դուք վաղորոք չեք կարող գիտենալ, թե ինչ է լինելու ձեր աշխատանքի արդյունքը։ Դուք կարծում եք, վոր կստանաք յերկու օղակ։ Սակայն ստանալու յեք մեկ օղակ յերկու անգամ առաջինից (նկ. 3)։



Նկ. 1



Նկ. 2



Նկ. 3



Նկ. 4



Նկ. 5

Կարելի յե թղթե այդ օղակով մեկ ուրիշ փորձ էլ կատարել.

Նախքան ժապավենների ծայրերն իրար փակցնելը, նրա մեկ ծայրն յերկու անգամ վոլորեցեք (այդ ժամանակ 1-ին անկյունը կգա 3-րդ անկյունի դիմաց)։ Յեվ մենք կստանանք այն օղակը, վորը ցույց է տրված 4 նկարում։ Յեթե այդ օղակը կտրենք յերկարությամբ, նրանից կստացվի յերկու օղակ, բայց մեկն անցկացված մյուսի վրա։

## ՇԱՐԱԴ № 1

Սկիզբը՝ խորն է ու մեծ,
Մեջը՝ աղմուկ անընդհատ.
Հետո մի տառ վերցրեք,
Վորը բոլոր բառերում
Ամենից շատ է լինում։
Վերջը՝ ամառը, շոգին
Մեր բոլորի սիրելին,
Իսկ յեթե վերջից կարդաք,
Զենքի անուն կստանաք։
Ամբողջի տերը հետո
Պիտի լինի մի հսկա,
Տնտեսությամբ յերկրի՝
Նա շատ ուժեղ զարկ կտա։

## Ի՞ՆՉ Է ՇԱՐԱԴԸ

Շարադը կամ բառախաղը հանելուկի մի տեսակն է։

Դուք պիտի գտնեք վորեվէ մի բառ։ Այդ գտնելու համար, հանելուկային ձևով տալիս են ձեզ այդ բառի վանկերի կամ մասի նշանակությունն առանձին վերցրած։ Անա դրանց միջոցով պիտի կազմել ամբողջ բառը։



Ռեբուս № 5



Ռեբուս № 6